# ՓԵՏՐՎԱՐԻ 23-Ը ՍՈՎԵՏԱԿԱՆ ԲԱՆԱԿԻ ԵՎ ՌԱԶՄԱԾՈՎԱՅԻՆ ՆԱՎԱՏՈՐՄԻ ՕՐՆ Է






Լուսանկարները՝ ՎԱԶԳԵՆ ՂԱՍԱԲՅԱՆԻ



# «ԵՍ ԼԱՎ ԵՄ»

ՀՈՎԻԿ ՎԱՐԴՈՒՄՅԱՆ

ՆԿ. ՆԻԿՈՂԱՅ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

Մորեղբորս բանակ մեկնելուց մեկ ամիս անցել էր արդեն, որ նամակ ստացանք: Տատս անհամբերությամբ ինձ էր սպասում: Դպրոցից վերադարձա, անմիջապես բացեցի ու սկսեցի կարդալ: Ընդամենը մի էջ էր: Մորեղբայրս գրում էր. «Նամակ ջան, թռիր ծովերի, դաշտերի վրայով...» Այսպես մորեղբայրս թռցրել էր նամակը, թըռցըրել ու հասցրել մեզ, որ ասեր. «...թռիր, բարևս հասցրու իմ հարազատներին: Փիսո ջան, ես լավ եմ»: Մի անկյունում էլ մանր տառերով ավելացրել էր, որ բարևեմ Հասմիկին:

— Հենց էսքա՞ն...— հիասթափված հարցրեց տատս:

Պատկերացնում էի մորեղբորս չարչարանքն այս նամակը գրելու ժամանակ: Նրա համար ավելի հեշտ էր մի մեծ բլուր հարթելը, քան մի էջ գրելը:

— Էլ ի՞նչ գրեր,— պաշտպանեցի ես,— գրել է, որ լավ է էլի:

Տատս լռեց, ողջ հույսը դնելով երեկոյան ընթերցանության վրա:

Երեկոյան պապս երկար պատրաստվեց նամակը լսելու: Մաքուր լվացվեց, հագավ տոնական զգեստները, նստեց սեղանի կողքին, կոկորդը մաքրեց ու

նայեց ինձ: Եվ ես սկսեցի. «Նամակ ջան, թռիր ծովերի վրայով, թռիր լեռների վրայով, թռիր քաղաքների վրայով...»

Պապս անհանգիստ շարժվեց տեղում: Ես շարունակեցի. «... Թռիր դաշտերի վրայով, թռիր անտառների վրայով...»

— Յա՜...— չհամբերեց պապս,— դեռ տեղ չհասա՞վ...

— Լռի՛ր,— սաստեց տատս,— չես տեսնո՞ւմ ինչ սիրուն է գրել գառս. «...թռիր, բարևս հասցրու իմ հարազատներին: Փիսո ջան, ես լավ եմ»:

— Էդ էլ եղավ նամա՞կ,— հանգիստ, առանց ջղայնանալու, ասաց պապս:

— Էլ ի՞նչ էիր ուզում,— պաշտպանեց տատս,— գրել է, որ լավ է էլի:

— Բա ես էս ձևի նամակ կգրեի՞,— նեղացավ պապս,— նամակ գրելն էլ շնորհք է: Ամեն ինչի համար էլ շնորհք է հարկավոր: Չէ՛, մարդ չի՛ դառնա...

Մինչև մյուս նամակն ստանալը, այս նամակն ամեն օր կարդում էի տատիս համար և նա ամեն անգամ խոնավացած աչքերով դուրս էր գնում:

Երկրորդ նամակի մեջ նկար կար: Մորեղբայրս նկարվել էր ամբողջ հասակով մեկ: Նավաստու համազգեստը կարծես հատուկ իր համար պատվիրված լիներ: Հեռվում ծովն էր ու հեռացող նավերը: Եվ մորեղբայրս ժպտալով նայում էր մեզ: Նամակն էլ նույնն էր: Մորեղբայրս թռցրել էր նրան, տուն հասցրել, որ բարևներ հաղորդեր իր հարազատներին, ասեր, որ ինքը լավ է:

Պապս նորից մաքուր լվացվեց, սակայն առանց հագնելու տոնական զգեստները, առանց շտապելու եկավ նստեց սեղանի կողքին, կոկորդը մաքրեց ու խորամանկորեն ժպտալով ասաց.

— Կարդա՛:

Ես, աչքով անելով տատիս, ծրարից հանեցի մորեղբորս լուսանկարը, մեկնեցի նրան: Պապս վերցրեց, շուռ ու մուռ տվեց, մոտեցրեց աչքերին, հեռացրեց, ապա մոտ բերեց լամպը, պատրույգը բարձրացրեց: Ես ուշադիր հետևում էի: Եվ հանկարծ նրա դեմքը լուսավորվեց, աչքերը պայծառացան, ժպտաց ուրիշ ձևով: Երբեք այդպես չէր ժպտացել: Առանց հայացքը կտրելու նայում էր ու ժպտում: Ապա բարձրացրեց հայացքը, նայեց մեկ ինձ, մեկ տատիս, ու հպարտորեն ասաց.

— Ինձ է քաշել:

— Հա՛,— ասաց տատս,— լավ բաներում միշտ քեզ են քաշում, վատ բաներում՝ ինձ:

Պապս նկարը դրեց սեղանին, ձեռքով շոյեց ու նորից ասաց.

— Կարդա՛...

Ես բարձրաձայն սկսեցի կարդալ: Եվ կես էջի վրա, մորեղբորս նամակը թռչում էր ու թռչում, մինչև հասավ մեզ: Սակայն այս անգամ պապիս դեմքին չհայտնվեց ծանոթ, սպանիչ քմծիծաղը, որից ես ու մորեղբայրս շատ էինք խեղճանում: Լռության մեջ բարձր հնչում էր միայն իմ ձայնը: Վերջացրի ընթերցելը: Մենք լուռ ժպտում էինք: Լսվում էր վառարանի միալար նվագը ու տաք, տատիս նոր թխած հացի բուրմունքի նման տարածվում տանը: Իսկ պապիս հայացքից այնպիսի ջերմություն էր առաջանում, որ ասես դրանից էր պատուհանից այն կողմ հալվում ձյուները:

*ՄԱՔՍԻՄ ՈՍԿԱՆՅԱՆ*

# ԵՂԵԳԸ



Պայթեց մի օր մի չար հողմ,
Սարսափ փռեց ամեն կողմ,
Դարձրեց ամայի,
Պոկեց անտառ, խմեց գետ
Ու քրքջաց ինքն իր հետ
Ձայնով ամեհի։

Հողմից հետո դաշտում մերկ
Մնացել էր մի եղեգ,
Մի բույս ալացիկ,
Որ երկնքի առջև պարզ
Կանգուն էր ու անվնաս
Ու դեռ գեղեցիկ։

— Բարակ, բեկ-բեկ, իմ եղեգ.
Կաղնին անգամ աներեր
Եկավ փորձանքի,
Մարմնով քո նուրբ, ալացիկ,
Ինչպե՞ս կուլ չգնացիր
Վայրի հորձանքին։

—Ով կասկածեց թե չեն գա
Կրկին օրերն արևկա,
Կործանվեց, ընկավ,
Հողմն ինձ ճկեց, չպոկեց,
Ինձ իմ հավատը փրկեց
Եվ ահա ես կամ...

## ԵՍ ԵՎ ԴՈՒ

Իմ նստարանն առջևում է, քոնը՝ վերջում,
Սակայն քեզ եմ տեսնում նույնիսկ գրքիս էջում։

Տետրս հանում և սկսում եմ նկարել՝
Մի պատանի, իսկ սրտի տեղ՝ մի մեծ արև։

Եվ իմ ներսում մի զանգակ է կանչում բեկ-բեկ,
Կանչում է քեզ, որ միասին ձայնը լսենք։

Ցուռ եմ գալիս՝ ինձ թվում էր ինձ ես նայում,
Ու... քրքիջ է պայթում հանկարծ դասարանում։

Բայց ծիծաղը, քո ծիծաղն է ողողում ինձ,
Ասես թաքուն մի թանկ բան են խլում ինձնից...

Մոտենում է ուսուցիչը ու բարկանում...
Ինչու՞ այսօր ոչ մեկը ինձ չի հասկանում։

Առաջին արհեստական արբանյակը Երկրի ուղեծիր դուրս բերեց Սովետական Միությունը՝ 1957 թ.: Սովետական մարդը եղավ տիեզերական տարածություն առաջին ոտք դնողը: Եվ բավական էր մարդն հայտնվեր տիեզերքում, որ դրան հաջորդեր նոր ձեռքբերումի գործնական կիրառումը:

Այնուհետև թե որքան սրընթաց շարունակվեց այդ պրոցեսը, կարելի է դատել նրանից, որ արդեն ՍՄԿԿ 24-րդ և 25-րդ համագումարների պատմական որոշումներում լայն ծրագիր կանխանշվեց Երկրի արհեստական արբանյակները գիտության տարբեր բնագավառների, տեխնիկայի և ժողովրդական տնտեսության շահերին ծառայեցնելու:

Այսօր դժվար է հիշատակել մարդկային գործունեության մի բնագավառ, որտեղ օգտագործվելիս չլինեն արհեստական արբանյակների հաղորդած տվյալները:

Տիեզերական տեխնիկայի օգնությամբ հետազոտվում է մերձերկրյա տիեզերական տարածությունը, Արեգակնային համակարգության մոլորակները, կատարվում են Երկրի ձևի ու ծավալի, նրա մագնիսական ու ձգողական դաշտերի չափումները, իրականացվում են ռադիո և հեռուստատեսային հեռավոր կապեր, կանխատեսվում է եղանակը, ապահովվում են օդագնացությունն ու նավագնացությունը, ուսումնասիրվում են Երկրի բնական հարստությունների պաշարները:

Արբանյակներն իրենց աշխատանքն են գտել նաև աստղագիտության, մետաղամշակության, բժշկության, կենսաբանության, ֆիզիկայի և այլ բնագավառներում: Բավական է ասել, որ ներկայումս տիեզերական «սպառողներ» են համարվում Սովետական Միության ավելի քան 400 գիտական, նախագծահետազոտական և արդյունաբերական կազմակերպություններ, հազարավոր գիտնականներ:

Տիեզերական տեխնիկան դարձել է միջազգային համագործակցության ասպարեզ:

Մի շարք բնագավառների գործունեությունը ներկայումս պարզապես անհնարին կլիներ՝ առանց արհեստական արբանյակների: Տիեզերական տեխնիկան հիմք դարձավ հատկապես բնագիտության գիտատեխնիկական հեղաշրջման գործում և գիտության մեջ ստեղծեց նոր ուղղություն՝ տիեզերական բնագիտություն:

Տիեզերական տեխնիկան հնարավորություն է տալիս միանգամից ուսումնասիրել մեր մոլորակի մի մեծ հատված: Դա մեզ հնարավորություն է տալիս նախ հասկանալ ու յուրացնել այդ հատվածի ընդհանուր օրինաչափությունները և ապա դրա հիման վրա հայտնաբերել, առանձնացնել ավելի հեռանկարային տեղամասեր և սկսել դրանց տնտեսական յուրացումը:

Այսպես օրինակ. Չուկոտկայի և Երկրի հյուսիսային աշխարհագրական քարտեզը կազմելու համար բոլորովին վերջերս պահանջվում էր հերոսական ջանքեր: Այդ աշխատանքը իրավամբ սխրանք էր համարվում: Այժմ արհեստական արբանյակները կարող են թռչել Երկրի ցանկացած տեղանքի վրայով, նկարել այն և պատկերը հաղորդել Երկիր: Որքան էլ հակասական թվա, տիեզերքից մեր մոլորակը ավելի մոտեցավ մեզ:

«Սալյուտ—6» ուղեծրային կայանով հինգ րոպեանոց թռիչքի ընթացքում կարելի է նկարահանել մեկ միլիոն քա-

ռակուսի կիլոմետր ցամաքի կամ ծովի մակերես: Ինքնաթիռով նման աշխատանք կատարելու համար կպահանջվեր նկարահանման երկու սեզոն: Կամ ասենք, անհրաժեշտ է իմանալ ձյան շերտի գարնանային նահանջը մեր երկրի ողջ եվրոպական տարածքով: Նման խնդիրը ինքնաթիռի ուժերից վեր է, իսկ արբանյակը հաշված ռոպեների ընթացքում կպատասխանի այդ հարցին: Ընդ որում նրա ուղարկած տեղեկությունը չափազանց հավաստի է: Դժվար չէ պատկերացնել, թե նման տեղեկությունը որքան անհրաժեշտ է գարնանային աշխատանքների, գետային ու ծովային նավարկությանը նախապատրաստվելու, եղանակի տեսության և այլ հարցերում:

Արբանյակն ինքնին եղանակի ուսումնասիրության ինքնատիպ լաբորատորիա է: Նա թռչում է «եղանակից» բարձր: Ամպամածություն, ձյուն, անձրև, մառախուղ և մնացած այն ամենը, ինչն արգելք է հանդիսանում օդային նկարահանումներին, արբանյակին չի կարող խանգարել:

Տիեզերքից կարելի է իսկույն հայտնաբերել և գնահատել անտառների վիճակը. որտեղ է հրդեհ բռնկվել, որ անտառը ինչ հիվանդությամբ կամ ինչպիսի վնասատուներով է վարակվել:

Միայն տիեզերքից կարելի է տեսնել Համաշխարհային օվկիանոսի առանձին հատվածների ընդհանուր պատկերը, նկարահանել դրանք, իմանալ ծովի կամ օվկիանոսի հատակը ինչպիսի կառուցվածք ունի կամ որոշել, թե որտեղ հորատող հարմարանք տեղադրել, որ ուղղությամբ անցկացնել ստորջրյա խողովակաշար: Նույնիսկ ձկների վտառ հայտնաբերելու և այդ մասին ձկնորսական նավերին հայտնելու պարտականությունն է իր վրա վերցրել արբանյակը:

Վերջերս «Բնություն» պետական կենտրոնը մի քանի նյուղային կազմակերպությունների հետ համատեղ անցկացրեց փորձարարական աշխատանքներ՝ ըստ տիեզերքից ստացված տվյալների: Այդ հետազոտության ընթացքում հայտնաբերվեցին շատ արժեքավոր մետաղների, նավթի ու գազի հարուստ պաշարներ:

Տիեզերական ինֆորմացիայի հիման վրա բերքահավաքի ժամանակ կարելի է լինում անհրաժեշտ տեղեկություն ստանալ եղանակի տեսության վերաբերյալ, որոշել առանձին մարզերում ապագա բերքի ծավալը, հետևել տարբեր կուլտուրաների հասունացման ընթացքին: Այդ ամենի հիման վրա նախապատրաստվում է պահանջվող քանակությամբ տեխնիկա, փոխադրամիջոց, պահեստներ և անհրաժեշտության դեպքում բերքահավաքի ժամանակ աշխատուժն ու տեխնիկան մի տեղից մյուսը տեղափոխելու խնդիրները:

*ՄԿՐՏԻՉ ԿՈՐՅՈՒՆ*

## ՏԱՏԻԿՆ ՈՒ ՇՈՂԵՐԸ

— Շողե՛ր, Շողե՛ր,
Բե՛ր ինձ շյուղեր,
Հեքիաթ ասեմ,
Հետն էլ հյուսեմ:
Ձեռնոց գործեմ
Փափու՛կ-փափու՛կ,
Որ դու հագնես
Տաքուկ-տաքուկ:
Սառցին, ձյունին
Մեր պսպղան
Ուրախ քշես
Դահուկ, սղղան:
Շողե՛ր, Շողե՛ր,
Բե՛ր ինձ շյուղեր,
Հեքիաթ ասեմ,
Ձեռնոց հյուսեմ:

## ՕՐՆ ԷԼ ՄԵՂԱՎՈՐ Է

— Ա՜խ, հանցավոր եմ,
Ես հանցավոր եմ,
Բայց ինչու՞ այսպես
Շուտ անցավ օրը...
Ի՞նչ ասեմ պապիս,
Ի՞նչ ասեմ տատիս,
Այսօր չեմ խփել
Ես մատը-մատիս:
Ինձ կասեն, վա՜խ, վա՜խ,
Ամբողջ օրն էլ խա՞ղ...
Խաղը իր տեղին,
Դասը իր տեղին,
Բայց դու զոհել ես
Դասերդ խաղին...
Լավ, ընդունենք թե
Ես հանցավոր եմ,
Իսկ ինչու՞ այսպես
Վաղ անցավ օրը...

# ՄԵԾ ՁՅՈՒՆ

*ՎԱՐՈՒԺԱՆ ԱՅՎԱԶՅԱՆ*

Ձյունը խոշոր փաթիլներով գալիս էր, և պատուհանի տակով անցնող ճանապարհով կանայք կծկված գնում էին աղբյուրը։ Վերևից Օվանես պապը ոչխարը բերում էր ջրելու, և չհնացող ձյան վրայից հետքերը դանդաղ ու անշշուկ լցվում էին։

Տղան նայում էր պատուհանից և չգիտեր, թե որտեղ է սուրբ Հովհաննես սարը, չգիտեր որտեղ է գետի ծանր սառույցը, փոքրիկ եղևնիների մենավոր անտառը, որովհետև ձյունը շատ խիտ էր գալիս, և Օվանես պապի ծխախոտի ծուխը անծայր տխրության նման տարածվում էր իրիկնապահի գորշության մեջ։

— Էսպես էլ ձմե՞ռ կլինի,— փընթփընթում էր մայրը և վառարանի մեջ փայտ դարսում,— անտերը էնպես է շոքել, ոնց որ էլ չի բարձրանալու։

— Ոչխարը ջրե՞նք,— ասաց տղան և էլի պատուհանից նայեց։— Օվանես պապը իրենցը տարավ։

— Երեկվա սուպից կա, կուտե՞ս։

— Բա ոչխարը չե՞նք ջրելու,— ասաց տղան, և չգիտեր, որ մոր պես ասաց։

— Էս հինգ-վեց օր է կովը գիշերը վեր է կենում, մզզում է,— ասաց մայրը,— կուրծն էլ չորացել, քար է դառել, էսօր տաք ջուր եմ տալու, գիշերը կարող է ցավը բռնի։

Վառարանի դռան ծակերից կայծեր էին թռչում և մեկ-մեկ փռթալիս՝ ծուխ։ Տունը թեթև ծուխ էր լցվել, մայրը արագ-արագ ավլում էր և դեմքի վրայից կախվել էին շալի ծայրերը։

— Էդ սուպը կտաքանա, կուտես,— ասաց մայրը,— հետո կգնաս Սամսոն փեսային կասես՝ Սամսոն փեսա, մեր կովը գիշերը վայ թե ծնի, մերս ասեց՝ արի մի նայի, թե որ տանն էլ չեղավ, կգնաս կոլխոզի գոմերը, էնտեղ կլինի։

Տղան դռան ետևից վերցրեց սառը ոտնամանները և մեջքով շուռ եկավ մոր կողմը, որ մայրը չտեսնի կոշիկի բացված կողքը։

— Որ էգ լինի, լավ է,— պայծառ ասաց մայրը, դանդաղ կապելով քանդված շալը։— Նազոն պառավել է, էդ հորթը կմեծացնենք, մոր ցեղը լավ ցեղ է, մոր պես կլինի։

Տղան կանգնել էր գռի մոտ և նայում էր դեպի ձյան մեջ թաղված, ջուրը ձգվող ոչխարին։ Տները կուչ էին գնացել անսահման ձյան մեջ։

Շահենի տան ետևով Շիրոյենց Խաչոն, մի ձեռքը գրպանում, մյուսը քայլի հետ թափահարելով տուն էր գնում, մինչև ծնկները խրվում ձյան մեջ։

— Հե՜-հե՜,— գոռաց տղան ոչխարի վրա և վազեց հետևից։

Բարձր ձյան մեջ ոչխարը չէր կարողանում փախչել, տղան չէր կարողանում հասնել, և ոչխարն ու տղան ընկնում էին ձյան մեջ, բարձրանում, ձյունոտ հևում էին, նայում իրար։

Գոմերի մոտից Շիրոյենց Արութը ոչխարն էր բերում ջրելու, և տղան հասկացավ, որ ինքը չի հասցնելու մեջտեղում կանգնել ու ոչխարը խառնվելու է։

Ձյան տակ, սպիտակ մթության մեջ գրեթե փաթիլ դարձած, տղան վազում էր ոչխարի ետևից։

— Է՜, ա՜յ բալա,— ոչխարը ջոկում ու չոր փնթփնթում էր Շիրոյենց Արութը։

Գոմից մոր հանկարծակի դուրս գալուց ոչխարը խրտնեց։

— Էդ ոչխարը թո՜ղ,— կանչեց մայրը,— էդ ոչխարը թո՜ղ, վազի Սամսոն փեսային ասա՝ Սամսոն փեսա, շուտ արա, արի, էս է՝ կովը ծնում է, գլխաբուշտը եկել է, ասա՝ Սամսոն փեսա, մերս մենակ է, մարդ չկա։ Ճամփին էլ մտի, պապիդ ասա։

Պապի տունը վերևից՝ եկեղեցու մոտից եկող ու կողքից՝ աղացարանի մոտից եկող ճանապարհների անկյունում էր, փոքր, ձյան տակ կքած, խուրձ շալակած պառավի նման։ Տղան առաջ պապի տունը հասավ, տատը բահով հարթեցնում էր կարտոլի հորի վրա նոր թափած կուն, պապի, պապի, գոռաց, տատը ասաց՝ ի՞նչ է, կովը, ասաց տղան, կովը ցավ է, էս է կծնի, մերս մենակ է, վայ թե հորթը փչանա, բա պապը ու՞ր է։ Սամսոնին ասի՞ր, ասաց տատը, Սամսոնին ասա, այ բալա, պապդ մենակ ի՞նչ անի, կարող է հորթը թարս գա, դու վազի Սամսոնին գտի, պապը տավարը տարավ ջրելու, էս է կգա, դե, դու վազի, պապին ես կասեմ։

Տղան ներքև-ներքև գլորվելով, կողքի-կողքի ընկնելով հասել էր Սամսոնի դռանը։

— Արի կարտոլ կեր, Սամսոնը էս է կգա,— ասաց Սամսոնի կնիկը,— կոլխոզի տավարն էլ է ծնում, էնտեղ է։

— Ա՜յ տղա, ու՞ր,— կանչեց Սամսոնի կնիկը,— արի կարտո՜լ կեր։— Տղան վազում էր Երեմի բոստանի մոտով, և Սամսոնի կնիկը, թաց, հոկա ձյան մեջ նրա բերանի գոլորշին էր տեսնում։— Որ Սամսոնը գա, ես կասե՜մ,— գոռաց նա,— դու կոլխոզի գո-

մերը գնա, էնտեղ կըլնի, կոլխոզի գոմերը։

Գոմի մոտ մայրը կանգնել իր անճարակ անհանգստության մեջ ուզում էր դուռը բանար մտներ գոմ, բայց չէր կարողանում։

— Վա՜յ, Նազո՛ ջան, վա՜յ բալա ջան, վա՜յ, խե՜ղճ անասուն,— լալիս էր մայրը, և ձյունը բառերը թաղում էր իր մեջ։— Վա՜յ, անլեզու՛ մեր, էս ո՞նց ես տնքում, էս ո՞նց ես լալիս, Նազո՛ ջան... Մի բա՛ն արա, տե՜ր աստված, ազատի՛ էս անլեզու անասունին, տե՜ր աստված, օգնի՛, մեղք է, չի իմանում ինչ է լինում իր հետ, աստվա՜ծ ջան, չի իմանում...

Նրա կողքին դրված դույլերից գոլորշին վերև էր ձգվում ու այդ վերևի տարածությունից իջնող ձյունը կաթիլ-կաթիլ լցվում էր տաք ջրի մեջ, չլմփում։

— Օ՜ֆ, Նազո՛ ջան, օ՜ֆ, սիրտս չի տանում նայեմ, էդ տնքալդ չեմ կարում տեսնեմ, Նազո՛ ջան...

Մայրը սև ու փոքրիկ լուսամուտից նայում էր ներս ու արագ կողքի քաշվում։

Ձյունը, ինչպես գետնին, նստում էր նրա վրա, և պատերից բխող ձայները մեկ-մեկ հավաքվում էին, փաթիլների պես նստում գիշերվա մութ տոպրակի հատակին։

Ճամփի մեջտեղով, սաստիկ հոգնած օրորվելով՝ գոմերից տուն էր գնում Ջանիբեկը։

— Ախչի՛, ի՞նչ է, չծնե՞ց,— երկար ասաց նա։

— Չէ՛, Ջանիբե՛կ եղբայր, չէ՜,— ասաց տղայի մայրը ու մի երկու քայլ առաջ եկավ։— Տավարը ջրելու վախտից էդ խեղճ անասունը տնքում է, տանջվում է։ Ախր էսպիսի բան չգիտեր, վեց ծին էր ունեցել՝ էսպիսի բան չէր եղել, Սամսոն փեսան ու Աղասի եղբայրը էստեղ են, խեղճերը իրենք էլ հալից ընկան։

— Սպասի՛,— ասաց Ջանիբեկը, խոտոտ սապոգներով խըռթ-խըռթ կոխկրտեց մաքուր ու առաձգական ձյունը,— սպասի՛ մի նայեմ, խեղճին դրանք կսպանեն, վայ թե թարս է գալիս։

— Եսի՞մ,— ասաց տղայի մայրը,— եսի՞մ, Ջանիբե՛կ եղբայր։

Ամպից մինչև գետին երկար ձգվում էր վիթխարի փաթիլը և անշարժ, բերանքսիվայր պառկում։

— Արա՜,— ներսից գոռաց տղան,— ջուրը բե՜ր, արա՜, բեր լվացվե՜նք, պրծավ։

— Ի՞նչ է,— ասաց մայրը,— և ուսերին դիզված ձյունը թափվեց։

— Էգ է,— ասաց տղան,— ջուրը բե՜ր, էգ է։

# ԿԱՐԱՍՆԵՐՆ ՈՒ ԹԶՈՒԿՆԵՐԸ

*ՌԱԶՄԻԿ ԴԱՎՈՅԱՆ*

Մենք յոթ կարաս ունեինք,
Յոթը կարաս խոր ու մեծ,
Կյանքը փոխվեց, ու հերթով
Յոթ կարասն էլ փշրվեց:

Հայրս ասում էր՝ մեր տան մեջ
Յոթը թզուկ են ապրում...
Ապրում են յոթ կարասում՝
Այս մեկն էլ մայրս էր ասում:

Նա թեքվում էր կարասին,
(Կարասը՝ մեծ, ես՝ պստիկ),
Յուղ էր հանում կարասից,
Հուզվում էի ես սաստիկ:

Մեկից էլ մեղր էր հանում,
Մեկից՝ ձավար, մեկից՝ թուփ,
Որքան էի զարմանում.
Հսկա կարաս, ներսը՝ մութ:

Ինչ կախարդանք, ինչ հրաշք,
Ինչեր ասես չկային...
— Հիմա ու՞ր են դրանք, հայր,—
Հարցրի հորս նկարին:

Մի մեծ, հսկա կարասից
Փարչով գինի էր բերում,
Խմում, ասում էր՝ գինին
Խունկ ու խաղող է բուրում:

— Որտեղի՞ց ես հանում, հա՛յր:—
Նա ծիծաղում էր վրաս.
— Ներսում թզուկ կա, որ միշտ
Լցնում է փարչը, տղա՛ս:

— Ամանդ ո՞վ է լցնում,
Մայրի՛կ, ցորենը պուրպուր:
— Բարի թզուկը, տղա՛ս,
Ցորենատուր, բախտատուր:

— Քույրի՛կ, քեզ ո՞վ է տալիս
Մեղրը ոսկի, խունկ ու սար:

— Պստի՛կ եղբայր, տալիս է
Մեղրի թզուկը՝ փեսադ...

... Մենք յոթ կարաս ունեինք,
Յոթը կարաս՝ խոր ու մեծ,
Կյանքը փոխվեց, ու հերթով
Յոթ կարասն էլ փշրվեց:

Պառկում էի քնելու,
(Կարասներում՝ յոթ թզուկ).—
Կախարդական պատկերներ,
Խորհրդավոր փսփսուք:

Թզուկները մեղրահոտ,
Գինի խմած, պարելով,
Թռչում էին զվարթուն
Երդիկ տանող սանդուղքով:

Պարում էին լուսնի հետ,
Աստղերի հետ զրուցում՝
Կանաչ լիներ թե լիներ
Խորը ձմեռ ու պաղ ձյուն:

Յոթը կարաս ունեինք,
Յոթը բարի թզուկով,
Սակայն մի օր լցվեցին
Կարասները խոր սուգով:

Դա պատահեց, երբ նրանց՝
Թզուկներին այն բարի,
Կարասներում բարության
Մորթեց սարսափը վայրի:

... Մենք յոթ կարաս ունեինք,
Յոթը հրաշք՝ խոր ու մեծ,
Կյանքը փոխվեց, նրա հետ
Յոթ կարասն էլ փշրվեց:

Հիմա նայում եմ հեռվից
Մանկությանն իմ փշրված,
Արյու՜ն... Սարսա՜փ... Լռությու՜ն:
Ու մաքուր մի փշուր հաց:

# ԶՐՈՒՅՑՆԵՐ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ

*ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*
*բանասիրության դոկտոր*

## 34. ԲԱՌԱԿԱՊԱԿՑՈՒԹՅՈՒՆ, ՈՐ ԽԱԽՏԵԼ ՉԻ ԿԱՐԵԼԻ, ԿԱՄ՝ ԴԱՐՁՎԱԾՔԻ ՄԱՍԻՆ ԱՌՀԱՍԱՐԱԿ

Լսած կլինեք՝ «կոկորդիլոսի արցունք է թափում». այդպես ասում են այն մարդու մասին, որ կեղծ է արտասվում, վիշտ է ցուցադրում, մինչդեռ ներքուստ վիշտ չի ապրում:

Այս արտահայտությունն ունի կենսական հիմք. իրոք կոկորդիլոսի մեջ կուտակվում է հեղուկ նյութ, որ անջատվում է նրա աչքերից որսն ուտելուց առաջ: Իհարկե, դա զուտ ֆիզիոլոգիական երևույթ է և կապ չունի հուզմունքի հետ: Այստեղից էլ ծագել է հիշյալ արտահայտությունը և թափանցել նաև հայոց լեզվի մեջ:

Բայց այս դեպքում մեզ զբաղեցնողը ն ուրիշ բան է: Կարելի՞ է «կոկորդիլոսի արցունք թափել» բառակապակցության մեջ որևէ բառ փոխել, հանել կամ ավելացնել: Փորձեցեք, և կհամոզվեք, որ չի կարելի, ամեն մի փոփոխություն արտահայտությունը կզրկի ծանոթ իմաստից:

Փորձենք փոփոխություն մտցնել, օրինակ, «բաց դռներ ծեծել», «ջրի երես դուրս գալ», «ծայրը ծայրին հասցնել» և նման ուրիշ արտահայտությունների մեջ: Վերստին կհամոզվենք, որ դա անհնար է անել առանց իմաստն աղավաղելու:

Հենց այդ պատճառով էլ լեզվաբանները դրանք համարում են խոսքի անազատ կապակցություններ այսինքն՝ դարձվածքներ: Անազատ լինելը դարձվածքի առաջին հատկանիշն է բայց ոչ միակը:

Երբ ասում ենք «խոսքը կտուրը գցեց», «լեզուն կապ ընկավ», «գլուխ պահել» և այլն, և այլն, մենք այդ դարձվածքները չենք հորինում, դրանք մեր միտքն են գալիս միանգամից, պատրաստի վիճակում: Կարծես ինչ-որ մեկը դրանք սարքել է մեզ համար, որ մենք տեղն ընկած պահին դուրս բերենք մեր հիշողության ծալքերից ու գործի դնենք:

Ահա ինչու լեզվաբանները դարձվածքի մյուս հատկանիշը համարում են այն, որ դրանք խոսքի պատրաստի կապակցություններ են:

Դուք հիշու՞մ եք մեր 8-րդ զրույցը, ուր նմանություն էր նկատվում խոսելու, գրելու և որմնադիր վարպետի աշխատանքի միջև. վարպետը պատ շարելիս քար է ընտրում, խոսողը կամ շարադրողը բառ է ընտրում:

Այս նույնը վերաբերում է նաև դարձվածքներին, միայն մի տարբերությամբ. մի դեպքում գործ ունենք բառի հետ, մյուս դեպքում՝ դարձվածք կոչվող բառային կապակցության: Ժամանակակից շինարարներն էլ նույնն են անում՝ շենք կառուցելիս օգտագործում են ամբողջական բլոկներ, երբեմն մի ամբողջ պատ, դեռ դուռն ու պատուհանն էլ հետը:

Առիթը ներկայանալուն պես իսկույն մտաբերում ենք հարմար դարձվածքը և տեղը դնում: Տեսնում ենք՝ մեկը թեժացնում է վեճը, ասում ենք՝ «կրակի վրա յուղ է լցնում», տեսնում ենք՝ մեկը լավ չի աշխատում, մտաբերում ենք դարձվածքը և ասում՝ «գլուխ է պահում», ուզում ենք ասել՝ մարդը խելոքացել է, հիշում ենք հարմար դարձվածքն ու ասում՝ «խելքը գլուխն է հավաքել»: Եվ, ինչպես նկատում եք, դարձվածքների շնորհիվ մեր խոսքը դառնում է ավելի վառ, կենդանի, պատկերավոր: Այստեղից էլ՝ դարձվածքների պաշարը

հարստացնելու, իմանալու և մտապահելու կարևորությունը:

Մեր լեզուն դարձվածքներով հարուստ է չափազանց: Համոզվելու համար կարող եք թերթել լեզվաբաններ Ա. Սուքիասյանի և Ս. Գալստյանի կազմած դարձվածաբանական բառարանը՝ մի վիթխարի հատոր: Շատ գրավիչ զբաղմունք է: Եթե ոչ այդ հատորը, ապա դարձվածաբանական փոքր բառարանը դուք պարտավոր եք թերթել. լեզվաբան Պ. Բեդիրյանը դա կազմել է և մեր «Լույս» հրատարակչությունը տպագրել է հատկապես դպրոցականների համար:

Ասացինք, որ դարձվածքը կայուն, անազատ բառակապակցություն է և ենթակա չէ փոփոխության: Դա ճիշտ է, բայց մի շատ էական վերապահությամբ, երբեմն, հատկապես գեղարվեստական գրականության մեջ, դիտումնավոր կերպով փոփոխություն արվում է՝ դարձվածքը նորովի, մի այլ կերպ իմաստավորելու համար:

Բերենք մի օրինակ ևս: «Դների քըրքիջը» պիեսում գրող Միքայել Մանվելյանը պատկերել է սատանաների երևակայական մի աշխարհ, ուր մայրը նախատում է իր ճուտին: «Կրա՛կ թափվի գլխիդ, մարդու փա՛յ դառնաս»: Բուն դարձվածքը («սատանայի փայ դառնալ») փոխելով, հեղինակը պատկերավոր ձևով արտահայտել է իր գրըվածքի այն միտքը, թե սատանաներն են սարսափում մարդկանցից և ոչ թե հակառակը և որ «մարդու փայ դառնալ» խոսքը սատանաների միջավայրում պատիժ ու պատուհաս է նշանակում:

Ինչպես տեսնում եք, սրանք դարձվածքների վերաիմաստավորումներն են ըստ դրանց վաղածանոթ տրամադրության, ուստի և դրանք ի չիք չեն դարձնում այն կանոնը, որ դարձվածքը կայուն բառակապակցություն է:

Կարող է ձեր մեջ հարց ծագել՝ եթե այդպես է իրոք, ապա մի՞թե այդ նույն հատկանիշը չունեն ասացվածքները, թևավոր խոսքերը, աֆորիզմները, պարադոքսները, որոնց մասին խոսք եղավ մեր նախորդ գրույցներում: Իհարկե, ունեն: Եվ դա է պատճառը, որ լեզվաբանները դրանք նույնպես համարում են դարձվածք՝ լայն առումով:

Այս զրույցը կարդալով դուք հավանորեն համոզվեցիք, որ դարձվածքները ճոխացնում, հարստացնում են լեզուն, կենդանի շունչ են պարգևում խոսքին: Որքան հարուստ է լեզուն դարձվածքներով, այնքան հարուստ է առհասարակ: Հայոց լեզվի դարձվածքների շտեմարանը զննելով կարելի է տեսնել, թե ի՛նչ վիթխարի պատմական ճանապարհ է անցել մեր ժողովուրդը՝ դարձվածքներ ներմուծելով և՛ հունահռոմեական դիցաբանությունից, և՛ աստվածաշնչից, բոլոր լեզուներից այն ժողովուրդների, որոնց հանդիպել և որոնց հետ շփումներ է ունեցել իր պատմության երկար ու ձիգ ճանապարհին: Դրանք, ինչպես, օրինակ, «սառույցը կոտրել», «բաց դուռ ծեծել», «Ամերիկա գտնել», «առաջին ջութակ», «երկաթը տաք-տաք ծեծել», «գլխարկի ծանոթություն», «բացվիր, Սեզամ», «եղանակ ստեղծել» և այլն, և այլն, ունեն միջազգային բնույթ, դըրանք շատ ժողովուրդներ են գործածում, դյուրությամբ թարգմանելով մի լեզվից մյուսը:

Բայց ամեն ժողովուրդ ունի նաև մեծաթիվ դարձվածքներ, որ կրում են խորապես ազգային բնույթ: Ստեղծված սեփական կյանքի ու կենցաղի, ազգային պատկերավոր մտածողության հիման վրա, սեփական լեզվամտածողության օրինաչափություններով՝ դրանք ենթակա չեն թարգմանության, քանի որ թարգմանվելիս, մեկ ուրիշ լեզվում հնչում են իբրև կատարյալ անհեթեթություններ: «Երկնքից շուն ու կատու է թափվում» դարձվածքը շարժում է մեր ծիծաղը, մինչդեռ անգլիացու համար դա ունի շատ հստակ իմաստ՝ հեղեղի պես անձրև է թափվում: Ճիշտ այդպես էլ «կծիկը դնել» դարձվածքը լսելով մենք հասկանում ենք, որ դա նշանակում է փախուստ տալ, մինչդեռ անգլիացին դրանից բացարձակապես ոչինչ չի հասկանա:

Այսօրինակ դարձվածքները կոչվում են իդիոմներ: Չափազանց հետաքրքիր երևույթ լեզվի մեջ, այնքան հետաքրքիր, որ արժե դրան մի ամբողջ զրույց ևս նվիրել:

ԱՐՏԱՇԵՍ ԱՏՈՄԻ

# ԵՍ



Լավ կլինի, որ ձյուն գա: Մեզ մոտ այնքա՜ն թեք տեղեր կան, ինչքան կարող ես սղղա: Հատկապես դասերից հետո, երբ պայուսակդ դնում ես տակդ ու իջնում:

Ծառերի վրա տերև չի մնացել: Ասենք, մեզ մոտ ծառ էլ չկա: Չորս կողմը շինարարություն է: Հայրս ասում է՝ մի երկու տարի հետո այստեղ շատ լավ կլինի, քաղաքի ամենալավ տեղը կլինի: Այսքան քարերի մեջ ո՞նց պիտի լավ լինի, չեմ հասկանում: Խոտ չի ծլում, ուր մնաց ծառ: Մեկ էլ սկսում եմ հավատալ հայրիկիս, որովհետև տեսել եմ մեր քաղաքի մյուս նոր թաղամասը՝ Նորքի զանգվածը: Հայրս ասում է՝ առաջ այնտեղ էլ քար ու քոռ էր: Ո՞վ գիտե, կապրենք, կտեսնենք...

Մեր տունը կարծես թանգարան լինի, մի բանի չես կարող ձեռք տալ, անմիջապես մայրս վրա է հասնում, թե՝ չի կարելի, բալիկ ջան, սա խաղալու բան չի, համ էլ սենյակը խաղալու տեղ չի:

Բա որտե՞ղ խաղանք:

Մայրս միշտ տանն է, չի՛ աշխատում: Հայրս չի թողնում, որ աշխատի, ասում է՝ զբաղվիր երեխաներով: Դրա շուրջը նրանք մի քանի անգամ վիճել են մեր ներկայությամբ: Ես զգում եմ, որ այս հարցում մայրս ճիշտ է, հիմա էլ հո մենք երեխա չե՞նք, թող աշխատի, էլի՛, ոնց էլ լինի, յոլա կգնանք: Բայց դե, երբ նրանք խոսում են, ինձ խոսք չի հասնում:

Հենց տուն հասնեմ, գրքերս կլցնեմ գրասեղանի վրա, միշտ այդպես եմ անում, մի քիչ կնստեմ, կթերթեմ «Հայրենի բնություն». այնտեղ հետաքրքիր նկարներ կան: Ես շատ եմ սիրում հայրենի բնությունը, բայց չեմ սիրում, երբ

# ՄԵՂԱՎՈՐ ՉԵՄ

*Նկ. ՍԱՐՈ ԿԱԼԵՆՑԻ*

ասում են՝ կարդա, սովորիր: Դասատուն բացատրում է, հալում լցնում ականջներս, ես էլ լավ հասկանում եմ, միտս պահում, ուզու՞մ եք, հիմա դասս պատմեմ, էլ ի՞նչ նորից կարդա-կարդա: Ուրեմն հայրենի բնությունս գիտեմ: Երգը՝ հեչ: Համ էլ ազատ ենք եղել, նույնն է մնացել: Աշխատանք, ֆիզկուլտ, դրանք էլ հեչ: Էլ ի՞նչ մնաց: Մայրենին անգիր է:

Երեկ ինձ կարդալ հարցրեց: Կարդացի, թվանշան ստացա: Վաղը ինձ չի հարցնի: Մեր դասարանում երեսունինը աշակերտ կա, հո ինձ ամեն օր չի՞ հարցնելու, դա ես հաստատ գիտեմ: Շատ լավ է, որ կարդալ հարցրեց: Մինչև իմ հերթը հասնի, դեռ շատ ժամանակ կա: Ուրեմն մայրենին էլ գիտեմ: Լեզու չունենք, լավ է: Ռուսացի էլ դասագիրք չունեմ: Հի-հի: Մենակ մաթեմատիկան մնաց: Այն էլ մինչև հայրս տուն չգա, չբացատրի, չեմ հասկանա: Էլ դաս չունեմ սովորելու, շատ լավ է: Մինչև մութն ընկնելը պատշգամբում կխաղամ, հետո էլ արդեն հեռուստացույցի հաղորդումները կսկսվեն: Հեռուստացույցի ոչ մի հաղորդում բաց չեմ թողնում: Դա հորս դուր է գալիս, որովհետև այդ ժամանակ ոչ մեկիս ձայնը դուրս չի գալիս: Ես շաբաթվա ծրագիրն անգիր գիտեմ: Այսօր երկու կինո կա, համերգ կա, մուլտ կա, «կենդանիների աշխարհում» կա: Լսեցի՞ք, «կենդանիների աշխարհում», ոնց էի մոռացել: Ես շատ եմ սիրում այդ հաղորդումը: Իսկ «լրաբերն» ու «ժամանակը» հորս սիրած հաղորդումներն են: Թե ինչ կա դրանց մեջ՝ հայրս ասում է՝ կմեծանաս, կհասկանաս:

Կապրենք, կտեսնենք:

«Ժամանակից» հետո կսկսվի կինոնկարը, դրա հետ էլ կսկսվի հորս քարոզը՝ «Ինչու՞ դաս չես սովորում... ինչու՞ ես ուշ քնում»... Ես ձայն չեմ հանում, միայն գլուխս եմ կախում և աչքի տակով շարունակում նայել կինոնկարը:

Քանի որ մեր չորս կողմը շինարարություն է, իսկական կռունկներ շատ կան, պատշգամբից էլ լավ երևում են, փորձեցի նրանց նման կռունկ շինել, ստացվեց: Իմ սարքած կռունկը մենակ կարողանում է հորս մուրճը բարձրացնել, այն էլ իմ օգնությամբ: Քանդեցի, որ նորից սարքեմ, քանդած էլ մնաց: Մայրս թողնո՞ւմ է, որ շունչ քաշեմ: Շուտ-շուտ կանչում է հաց ուտելու: Երկար դասամիջոցին վազելով գալիս եմ տուն: Մայրս արդեն ուտելիքը դրած է լինում սեղանին: Շտապ-շտապ ուտում ու վազում եմ ետ՝ դպրոց: Դպրոցից հենց հասնում եմ տուն՝ նորից է հաց դնում: Մի քիչ խաղում եմ, կանչում է հաց ուտելու: Հեռուստացույց եմ նայում, կանչում է հաց ուտելու: Չի թողնում սովածանամ, գիտենամ ինչ բան է սովածանալը:

Ես շարունակ չեմուչում եմ անում, իսկ նա ինձ վախեցնում է, թե հորդ կասեմ:

Ես գիտեմ, որ հորս չասի էլ, հայրս ինքն է տուն գալուն պես հարցնում՝ ի՞նչ եք կերել այսօր: Ինչու՞ եք քիչ կերել:

Բա ես մե՞ղք չեմ: Մեր թաղում խաղալու տեղ չկա, չորս կողմը քար ու քռա է: Տանը խաղալու տեղ չկա, չորս կողմը իրեր են, ոչ մի բանի ձեռք տալ չի կարելի: Միակ կարելին ուտելն ու դաս սովորելն է:

Բա ես մեղք չե՞մ...

# ՄԱՅՐԱՔԱՂԱՔԻ № 129

## ՇԱԲԱԹԸ ԹԵԵՎ ԱՎԱՐՏՎԱԾ Է...

Երևանի 26 կոմիսարների շրջանի բանուկ փողոցների մայթերին ու խաչմերուկներում կանգնած էին կարմիր փողկապավորներ:

Երբ ավտոբուսից, տրամվայից, տրոլեյբուսից ծանր իրերով մարդիկ էին իջնում, պիոներները օգնում էին նրանց, իսկ եթե իջնողը ծեր կին կամ տղամարդ էր, ճանապարհն անցկացնում և ուղեկցում էին մինչև տուն:

Այսպես էր անցնում «Թիմուրական շարժման շաբաթը» շրջանում:

Շաբաթն ավարտվեց, սակայն թիմուրականների շարժումը շարունակվում է:

№ 129 դպրոցի 6-րդ դասարանցիներ Վարդանը, Միքայելը, Արամը, Կարենը, Ռոբերտը մեծահասակներին օգնելիս շատերի հետ զրույցի էին բռնվել, իմացել, թե ով միայնակ է և դժվարանում է գնումներ կատարել ու հատկապես շուկա գնալ: Հիմա էլ նրանք այցելում են օգնության կարիք ունեցող տատիկներին ու պապիկներին, ձեռքներից եկածն անում, որի համար էլ արժանացել են ՀԼԿԵՄ 26 կոմիսարների շրջկոմի պատվոգրի:

## ՈՒԼՅԱՆՈՎՍԿԻՑ ՄԻՆՉԵՎ...

Նրանք նմանակել չեն սիրում: Նույնիսկ երբ նրանց պատի թերթի, վահանակի, սրահի կամ անկյան ձևավորում են հանձնարարում, ապա աշակերտները այն հարստացնում են սեփական մտահղացումով, առաջարկով և վարպետ կատարումով:

— Դեռևս չի եղել այնպես, որ մեր պիոներները կամ կոմերիտականները հուսախաբ անեն մեզ,— ընդգծում է դաստիարակության գծով դիրեկտորի տեղակալ ընկ. Միքայելյանը և բերում «Լենինյան սրահի» օրինակը:

Երրորդ հարկի միջանցքում պիոներներն ու կոմերիտականները համատեղ ձևավորեցին առաջնորդի կյանքի ու գործունեության մասին տեղեկություններ տվող ցուցափեղկերը, առանձին մակագրությունները: Թվում էր, թե պակաս բան չմնաց: Սակայն հենց իրենք էլ առաջարկեցին մի ցուցափեղկ պատրաստել, որի վրա հնարավոր լինի նշել, թե Սովետական Միության և արտասահմանյան երկրների որ քաղաքներում ու վայրերում է եղել Վ. Ի. Լենինը, որքան ժամանակով, ինչ է գրել այնտեղ, ինչ արել:

Դա դժվար իրականացվող խնդիր էր: Ամիսներ շարունակ նրանք կարդում, ուսումնասիրում ու տվյալներ էին ձեռք բերում, համեմատում իրար հետ, համարակալում ու հաջորդաբար անցկացնում իրենց կազմած քարտեզ-ուղեցույցի վրա:

Լենինյան սրահում այժմ կա այդ քարտեզը, որը սեղմ, բայց և մանրամասն պատմում է առաջնորդի կյանքի ու գործունեության մասին: Դրանից ոչ միայն իրենք՝ պիոներներն ու կոմերիտականներն են օգտվում, այլև՝ հոկտեմբերիկները:

# ԴՊՐՈՑՈՒՄ

Երևանի Գայի անվան դպրոցի պիոներական դրուժինան ՍՄԿԿ XXVI համագումարին նվիրված «Պիոներները ամբողջ երկրի հավատարիմ են գործին Լենինի» երթում:

## ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ՏՈՆ

Դպրոցի ինտերնացիոնալ բարեկամության ակումբը պատրաստվում էր Տոլյատիի № 33 դպրոցի աշակերտներին ընդունել: Հրավիրեց նաև Երկաթյա դիվիզիայի լեգենդար հրամանատար Գայի թոռնիկներին ու զինակիցներին (դպրոցը կրում է Գայի անունը և նրա զինակիցները այս դպրոցի պատվավոր պիոներներն են): Գայի անունը հայտնի է բոլոր դպրոցականներին: Իսկ Տոլյատիի ու հատկապես Միքիի շրջանում նրա հերոսամարտերի մասին լեգենդներ են հյուսվել հերոսի կենդանության օրոք:

Տոլյատցիները պարտքի տակ չմնացին: Գայականներին պատմեցին այն ամենը, ինչ լսել էին ականատեսներից ու դիվիզիայի վետերաններից:

Այնուհետև սկսվեց երգն ու երաժշտությունը: Դպրոցում շնորհալի երեխաներ շատ կան: Եվ հանրապետության տեսարժան վայրերը, պատմական հուշարձանները այցելելիս, երգն ու պարը անբաժան էին նրանցից:

Հրաժեշտի ժամանակ տոլյատցի դպրոցականները շփոթված հարցնում էին միմյանց ու նոր բարեկամներին. «Այս ինչպե՞ս անցավ ամբողջ շաբաթը, որ չզգացինք... Կարծես երազում լինենք»:

## ՆԱԽ ԵՎ ԱՌԱՋ ԳԻՏԵԼԻՔՆԵՐ

Հունան Ավետիսյանի անունը կրող պիոներական դրուժինան անցած ուսումնական տարին փակեց հարյուր տոկոս առաջադիմությամբ:

Միջանցքում փակցված «Մեր գերազանցիկները» վահանակը ինքնին վկայում է, թե ինչքան մեծ թիվ են կազմում ուսման առաջավորները նաև այս ուսումնական տարում:

Դրուժինան հաճախակի հանդիպումներ է կազմակերպում գիտության ու մշակույթի ճանաչված գործիչների, պատերազմի ու աշխատանքի վետերանների հետ: Իսկ մասնագիտություն ընտրելու կամ իրենց հետաքրքրող մասնագիտության մասին պատմում են ջոկատի անդամների ծնողները:

## ԳԵՂԵՑԻԿԸ՝ ՈՒՂԵԿԻՑ

Դպրոցում գործում է երգի-պարի, թատերական, ասմունքի խմբակներ: Աշակերտները բեմադրել են «Սուտլիկ որսկանը», «Արքայադուստր Պեպին» պիեսները, զեկուցումներ լսել արվեստի տարբեր ճյուղերի վերաբերյալ, հանդիպել գրողների հետ: Մասնակցել են «Ուրախ նոտաներ» շրջանային մրցույթին և գրավել առաջին տեղը: Հաջողությամբ հանդես են եկել Երևանի մանկավարժական ինստիտուտում: «Քնար» ակումբի պարապմունքներին ծանոթանում են դասական երաժշտության նմուշներին, զեկուցումներ լսում աշխարհահռչակ երաժիշտների, նրանց կյանքի ու գործունեության վերաբերյալ:



# ՊԱՊԵՆԱԿԱՆ ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

Ես գիտեմ, որ դուք, «Պիոներ» ամսագիրն ընթերցող սիրելի պիոներներ, շատ եք սիրում հանելուկներ, բայց քիչ բան գիտեք մեր հին, պապենական հանելուկների մասին: Դրանք այն հանելուկներն են, որ ստեղծվել են մեզանից 200—500—750—1000—1500 և ավելի տարիներ առաջ: Որքան շատ է սազում այդ հանելուկներին «պապենական» բառը: Այդ նրանից է թերևս, որ մենք սովորաբար, հանելուկներն առաջին անգամ լսում ենք մեր պապերից: «Այն ի՞նչն է ինչը»,—հաճախ ժպտալով ասում էր իմ պապը և առաջարկում.

— Ջին գնաց,

Թամբը մնաց:

Ես իսկույն լուծում էի. «Առուն է ու կամուրջը»:

— Մի մարագ՝

Լիքը ուրագ:

Ես իսկույն լուծում էի. «Բերանն ու ատամներն են»:

— Երկու տուն՝

Մի սյուն:

Ես իսկույն լուծում էի. «Քիթն է՝ իր երկու անցքերով»:

Պապս ուղղակի զարմացած էր մնում, գրկում էր ինձ և հրճվալից ձայնով հարցնում. «Այդ ինչպե՞ս ես իսկույն լուծում, թոռնի՛կս, իմաստու՛նս»: Ի՛նչ խոսք, իմաստունն՝ իմաստունի էի, բայց այդտեղ մի գաղտնիք կար, որը ես գիտեի, պապս չգիտեր: Դա այն էր, որ ամեն անգամ հանելուկ առաջարկելիս պապիս միամիտ հայացքն ուղղվում էր դեպի «հանելուկը»... Իսկ եթե նա ուրիշ կողմ էր նայում (ուր «հանելուկ» չկար), ես կրկնել էի տալիս առաջարկը, մինչև որ պապիս հայացքն ինքնաբերաբար ուղղվում էր «հանելուկի» կողմը, և ես իսկույն լուծում էի այն:

Փոքր ինչ դժվարին էին պապիս մյուս հանելուկները: Դրանք իսկական հանելուկներ էլ չէին, բայց չգիտես ինչու համարվում էին հանելուկներ: Մեկ էլ տեսար պապս մոլորված տրտնջում էր. «Ու՞ր կորավ. հենց նոր այստեղ էր. դարձավ հանելուկ...» Նման դեպքում պապիս հայացքը ոչինչ չէր ասում, ասողն իմ հայացքն էր, որն իսկույն գետնին դրված նրա փափախի տակից, արխալուղի գրպանից կամ ուղղակի իր կիսախուփ բռի միջից հայտնաբերում էր կորուստը: Այն մերթ նրա ծխամորճն

էր լինում, մերթ դանակը, մերթ կայծահանի fարը կամ պողպատի կտորը: Դրանով էլ հանելուկը համարվում էր լուծված: Այն ժամանակներում այդպես հաճախ հանելուկ էին դառնում նաև մեր շար ուլիկը, այծը, հորթը և նույնիսկ հսկա եզները: Լուծումը՝ դըժվարանում էր. պետf էր այգուց այգի անցնել, ծառաստանից ծառաստան, թփուտից թփուտ: Մի օր էլ հանելուկ դարձավ ինfը՝ պապս: Նրա հետ միասին հանելուկ դարձան նրա իմացած հազար-հազար հանելուկները: Ես իզուր որոնեցի նրան այգիներում ու արտերում, փողոցներում և հարևանների տներում. չկար ու չկար: Դա միակ հանելուկն էր, որ անլուծելի մնաց իմ մանկության տարիներին:

Այն օրերից հետո շատ ժամանակ է անցել: Ինձ համար վաղուց արդեն լուծված է պապիս անհայտանալու հանելուկը: Տխուր լուծում: Բայց ես սփոփված եմ, որովհետև աշխատում եմ Մատենադարանում: Այստեղ գտել եմ հանելուկ ասող նոր պապիկներ: Ճիշտ է, ես արդեն մեծ եմ (այնfան մեծ, որfան իմ պապը՝ «հանելուկ» դառնալուց առաջ»), բայց իմ նոր պապիկներն ավելի մեծ են: Նրանf ապրել են մեզանից 200—500—750—1000—1500 և ավելի տարիներ առաջ: Նրանց և իմ արանfում կանգնած է պապս: Մեր շղթան ձգվում է 20-րդ դարից մինչև 5-րդ դար: Այն ծայրում Դավիթ Քերթող պապիկն է՝ առաջին հանելուկ գրող պապիկը, իսկ մյուս ծայրում ես եմ՝ պապիս հանելուկներն անգիր արած նրա թոռնիկը: Ինձանից դեպի Դավիթ պապիկը՝ պապիկների շարfն է, նրանից դեպի ես՝ թոռնիկների: Պապ ու թոռնիկների այդ շղթան նաև հանելուկների շղթա է, հին ու նոր հանելուկների շղթա: Դավիթ պապիկից այն կողմ ուրիշ պապիկներ էլ կան, որոնց անունները չեն պահպանվել: Նրանց թիվն ավելի մեծ է, շղթան՝ շատ ավելի երկար, իսկ հնարած հանելուկները՝ հին-հին: Բայց ես այսօր կըխոսեմ միայն մեզ հայտնի պապիկների հանելուկների մասին: Զարմանալին այն է, որ չնայած այդ հանելուկները գրվել են հայերեն, բայց նրանց լեզուն նման է օտար լեզվի: Ես հասկանում եմ այդ լեզվով գրված հանելուկների միտfը: Որfան հնարամիտ ու զվարճալի են այդ հանելուկները: Ես սովորել եմ այդ հին հայերենը: Դուf էլ, սիրելի՛ փոfրիկներ, երբ մեծանաf, անշուշտ, կըսովորեf այդ լեզուն և կհասկանաf մեր պապերից ու ապուպապերից մեզ կտակված հանելուկների իմաստը: Իսկ հիմա ուզում եմ այդ հին լեզվից մեր այսօրվա, բոլորիս հասկանալի լեզվով փոխադրել մի շարf հին հանելուկներ, որպեսզի օր առաջ ծանոթանաf նրանց: Այս անգամ էլ, ինչպես կարգն է, ես նրանց պատասխանները չեմ հայտնի. դուf ինfներդ լուծեցեf դրանf և նամակով հայտնեf «Պիոներ» ամսագրին: Թանկագի՛ն բարեկամներ, լավ իմացեf, որ դրանով հանելուկ գրողների և լուծողների պապիկ-թոռնիկ շղթան կհարստանա ևս մի նոր ոսկեշող օղակով, և այդ օղակը կլինեf դուf: Աշխատեցեf, որ երբեf չընդհատվի այդ շղթան:

1.

Ահ ունեմ հրից
Ու սարսափ՝ ջրից.
Կառչելով ժայռից,
Փրկվում եմ մահից:

ԴԱՎԻԹ ՔԵՐԹՈՂ (V դ.)

2.

Հարյուր եղանակ,
Տասը աչf,
Ութը՝ տեսնող,
Երկուսը՝ ոչ:

ԱՆՀԱՅՏ ՀԵՂԻՆԱԿ (V—IX դդ.)

3.

Չորս ոտf ունի նա ինչպես շուն,
Չու է ածում որպես թռչուն,
Արածում է, չէ անասուն,
Վերարկուն է ոսկորե տուն:

ՆԵՐՍԵՍ ՇՆՈՐՀԱԼԻ (XII դ.)

4.

Սերմը՝ սև թանաք,
Դաշտը՝ սպիտակ,
Աչ ձեռքով ցանեմ,
Բերանով հնձեմ:

ՀՈՎՀԱՆՆԵՍ ԾՈՐԾՈՐԵՑԻ (XIII—XIV դդ.)

5.

Չի երևում, բայց գիտցիր, կա,
Կենդանի չէ, խոսում է նա.
Ինչ որ ասես դու բարձրաձայն,
Նույնը կտա քեզ պատասխան:

ՏԻՐԱՏՈՒՐ ՎԱՐԴԱՊԵՏ (XIII—XIV դդ.)

6.

Կենդանին նստում՝ մեռածի վրա
Ու ջերմացնում է մարմինը նրա,
Մինչև նա շնչում, կյանք է ստանում,
Եվ ինքը նրան մայրիկ է դառնում:

ԱՆՀԱՅՏ ՀԵՂԻՆԱԿ (XV—XVI դդ.)

7.

Քարի նման անկենդան եմ և չեմ
                    քայլում,
Բայց արևի պես պայծառ եմ ես
                    միշտ փայլում,
Նկարիչ եմ հրաշագործ ու անվրեպ,
Ինչ որ ցույց տան՝ այն ցույց կտամ
                    նրա հանդեպ:

ՍՏԵՓԱՆ ԴԱՇՏԵՑԻ (XVII դ.)

8.

Ճանաչում եմ մի կենդանի՝
Առավոտյան՝ քառոտանի,
Միջօրեին՝ երկոտանի,
Երեկոյան՝ եռոտանի:

ԿԱՐԱՊԵՏ ՍԵԲԱՍՏԱՑԻ (XVIII դ.)

9.

Ջձլողին՝ չձնողի մեջքին բարձեցին,
Անդադարի տան երդիկով անցան
                    գնացին:

ԱՆՀԱՅՏ ՀԵՂԻՆԱԿ (XVIII—XIX դդ.)

ԱՍԱՏՈՒՐ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ



# ՍԻՐԱՄԱՐԳԻ ՎԻՇՏԸ

*ԱՆԱՀԻՏ ՊԱՐՍԱՄՅԱՆ*

*Մի առավոտ գեղեցիկ, երփներանգ փետուրներով սիրամարգը հայտնվեց փոշոտ, մեծ ճանապարհին։ Նա սիգաճեմ գնաց-եկավ ճանապարհով՝ մեկ, երկու, երեք անգամ, բայց նրան նկատող չեղավ։ Այնպե՜ս վիրավորական էր։ Նա սովոր էր շարունակ հիացական խոսքեր ու շշուկներ լսել իր հասցեին։ Իր գեղեցկությունն անիմաստ էր դառնում, եթե տեսնող, գնահատող չկար։ Եվ մտավ մոտակա գյուղը։ Երեխաները իսկույն շրջապատեցին նրան։ «Ի՜նչ գեղեցիկ է», «Ի՜նչ սիրուն պոչ ունի», «Ի՜նչ լավ է քայլում»։ Երեխաներից մեկը ուզեց քաշել նրա պոչի փետուրներից մեկը։ Սիրամարգը տխրեց։ Արժե՞ մնալ սրանց մեջ, խաղալիք դառնալ նր-*



Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

րանց ձեռքին։ Ջարաճճի երեխաներ։ Փախավ նրանցից, մտավ մի տատիկի բակ։

Ներսուդուրս անելիս տատիկը տեսավ սիրամարգին.

— Աստվա՜ծ իմ,— ձեռքերն իրար զարկեց նա,— էս ի՜նչ հրաշք է։

Տատիկը ներս առավ սիրամարգին։ Ուզեց տեղավորել նրան հավերի մոտ, հավերը աննկարագրելի աղմուկ բարձրացրին։ Ավելի համարձակներն էլ փորձեցին կտցահարել նրան։

— Գռեհիկներ,— տրտնջաց սիրամարգն ու աչքերը լցվեցին արցունքով,— այս ու՞ր եմ ընկել։

Հավերը հանգիստ չէին տալիս սիրամարգին, տատիկը նրան տեղափոխեց հավանոցի կողքի մարագը։ Բայց, ա՜յ քեզ բան։ Հավերը չհանգստացան, շարունակեցին աղմկել։ Տատիկը ստիպված նրան մարագից էլ հանեց։ Սիրամարգը լուսացրեց ծառի տակ։ Բայց հավերը դարձյալ չէին հանգստանում։

— Ի՞նչ անեմ ես քեզ, սիրունի՜կս,— ցավով ասաց տատիկը։— Եթե էսպես գնա, իմ չալպուտուրիկները ինձ էլ ձու չեն տա, տեսնում եմ, քեզ նրանք չեն սիրում։

Եվ նա սիրամարգին տարավ տվեց իր հարևանուհուն։ Հարևանուհին վեր քաշեց ուսերը.

—Սիրամա՞րգ,— ասաց նա,— գեղեցիկ է, բայց ի՞նչ օգուտ սրանից։ Չէ, չեմ ուզում։ Ուրիշ բան, եթե, թեկուզ, հավի մի ճուտ տայիր։

Սիրամարգը լսում է այս ամենն ու տխրում։ Եվ նորից դուրս եկավ լայն ճանապարհ։ Հենց այստեղ էլ, նրա բախտից, նրան տեսավ կանացի գլխարկներ կարող վարպետն ու ասաց.

— Ա՜յ քեզ բախտ, որքա՜ն կշահեն իմ կարած գլխարկները, եթե զարդարվեն այս գեղեցկուհու փետուրներով։

Եվ ուրախացած տուն տարավ նրան։

Ու լավ եղավ, քանի որ սիրամարգի վիշտը փոխվեց արդարացի ուրախության, որ ահա ինքն էլ կարող է մի բանի պետք գալ։

ՓՈՔՐԻԿՆԵՐԻ ՀԱՄԱՐ



ՎԱՐԴԵՐԵՍ ԳԱՐԱԿՅՈԶՅԱՆ

*սփյուռքահայ բանաստեղծ*



## ՀԱՑԸ

Դաշտում ցորեն ցանեցին,
Ցորենն ելավ, դարձավ հասկ:
Հասկը եկան հնձեցին,
Ցողուն-ցորեն զատեցին,
Հարդը տվին կովերին,
Իսկ ցորենը աղացին...
Ճերմակ ալյուր մաղեցին,
Տոպրակ-տոպրակ ալյուրը
Տարան տվին հացթուխին,
Նա էլ խմորը շաղեց
Գունդ-գունդ դրեց փռի մեջ՝
Համով-հոտով հաց թխեց:

## ԱՐԵՎ

Արևն ելավ սարերից՝
առավոտ է, արշալույս,
մեր աշխարհին բերեց լույս,
բարի լույս ձեզ, բարի լույս:



Բարի լույս ձեզ, բարի լույս:
Բարի լույս մեր գյուղերին,
աղբյուրներին, արտերին,
լույսն ավետող աքլորին,
սագին, հավին, աղավնուն,
այծին, հորթին, ոչխարին,
նապաստակին, աղվեսին,
անտառի մեջ քուն մտած
արջուկին ու արջ քեռուն...
Արթնացեք շուտ, դուրս եկեք,
ծագեց արև, բարի լույս...
Բոլորեց երբ օրն արդեն՝
արևն անցավ սարի տակ:
Մայրամուտ է, վերջալույս.
ելան աստղեր ու լուսին,
բարի գիշեր, բարի քուն,
անուշ երազ բոլորին:

# ՄԵՆՔ ԵՎ ՄԵՐ ՀՈՂԸ

Հոկտեմբերյանի շրջանի «Արաքս» պետական տնտեսությունը մեծ չէ, բայց դա չի խանգարում, որ առաջավոր համարվի ո՛չ միայն շրջանում ու հանրապետությունում, այլև՝ Սովետական Միությունում:

Դրանում իրենց բաժինն ունեն դպրոցականները:

Անցած գարնան ցրտահարությունը 60—80 տոկոսով վնասեց այգիներին: Այդ օրերին «Արաքսում» ցրտահարության դեմն առնելու, այգիները պաշտպանելու հզոր միջոցներ ձեռնարկվեցին: Գործի լծվեցին մեծով-փոքրով, այգիները շրջապատեցին ծխարարներով: Որքան սաստկանում էր ցուրտը, նրանք այնքան ավելացնում էին ծուխը: Իսկ օրերը տաքանալուն պես էտեցին պըտղատու ծառերի ցրտահարված ճյուղերն ու խաղողի մատերը, որի շնորհիվ նրանք կարողացան կատարել ու գերակատարել տարեսկզբին նախատեսած պլանները:

Ցրտահարության օրերին և նրանից հետո, մեծերի կողքին դաշտերում ու այգիներում աշխատում էին բարձր դասարանցիները: Ամռանը վերանորոգվում էր դպրոցը, վերանորոգողները ուսուցիչներն էին: Տարբեր դասարանների մի քանի աշակերտ միայն ուղարկվեցին վերանորոգող ուսուցիչներին օգնելու, մյուսները շարունակեցին աշխատանքը բանջարանոցներում ու բոստաններում:

Դասերը սկսվելուց հետո էլ բարձր դասարանցիները իրենց մասնակցությունը բերին բերքահավաքին: Նրանք 270 տոննա դեղձ ու խաղող հավաքեցին:

Ուշ աշնանը, երբ հավաքեցին ու պահեստավորեցին ճակնդեղը, դըպրոցականները նոր միայն հեռացան դաշտերից:

Ահա թե ինչու տնտեսության դիրեկտոր Ա. Սարդարյանը ոչ միայն գովեստով է խոսում նրանց մասին, այլև միշտ ընդառաջում է նրանց էքսկուրսիաների և կուլտուրական հանգստի կազմակերպման հարցերում:

Լավ աշխատելուն զուգընթաց նրանք նաև լավ են սովորում:

Անցյալ տարվա 41 շրջանավարտներից 17-ը ընդունվեցին տարբեր ուսումնական հաստատություններ, մյուսներն աշխատում են տնտեսությունում:

ՍԵՐԳԵՅ ԼՎՈՎ

# Ի՞ՆՉ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ ԵՆ ԵՂԵԼ...

*Մարդը հենց որ դադարում է կարդալ, դադարում է նաև մտածել:*

ԴԵՆԻ ԴԻԴՐՈ

Այսօր հաճախ ենք լսում, թե՝ «կարդալու ժամանակ չունեմ»:

Կան ընթերցողներ էլ, որ դեմ չեն կարդալուն, միայն թե ո՛չ դասականներին. «Տուրգենևի, Տոլստոյի, Չեխովի գրքերը գրված են շատ վաղուց: Այդ ժամանակներից ի վեր շատ բան է փոխվել: Ինչու՞ կարդալ կորած գնացածի մասին, հետաքրքիր չի»:

Ոմանց կարծիքով էլ ժամանակակից գրքերն այն մասին են, ինչ այսօր կատարվում է իրենց աչքի առջև, տեսնում են, հիանալի գիտեն: Եվ սա ասվում է պարծանքով, իբրև՝ տեսեք ինչպիսին եմ ես: Մեր մեջ ասած, կան և այնպիսիները, որոնք այդպես չեն ասում, բայց այդպես մտածում են:

Դատում են և այսպես... «Շատ գրքեր գրվել են, երբ չկար կինո և հեռուստատեսություն: Հիմա ինչու՞ կարդալ «Պատերազմ և խաղաղություն», «Աննա Կարենինա», «Ֆորսայթների ընտանիքը», «Տիկին Բովարի», երբ այդ բոլորը կարելի է տեսնել կինոյով ու հեռուստատեսությամբ»:

Լսվում են նաև այսպիսի ձայներ. մի դպրոցական աղջիկ հուզված գրում է. «Օգնեցե՛ք ինձ: Ծնողներս ինձ արգելում են կարդալ: Նրանց կարծիքով գրքերը կխանգարեն ինձ լավ սովորել»:

Պատասխանելու համար դիմենք մեծ մարդկանց՝ հայտնի գիտնականների, գրողների, նկարիչների, քաղաքական գործիչների, գյուտարարների կարծիքներին: Ի՞նչ դեր է խաղացել գիրքը նրանց կյանքում: Մեծ մարդկանց թիվը, որոնք անխոնջ ընթերցողներ են եղել, անհաշիվ է: Դժվարանում եմ նույնիսկ որոշել ում հիշել, ում թողնել: Գրքերը հաճախ են ճանապարհ ցույց տվել, որոշիչ եղել մասնագիտություն ընտրելիս, հուշել հանճարեղ հայտնագործություններ, գյուտեր, ներշնչել գրելու նշանակալից աշխատություններ:

Սկսենք հնագույն ժամանակներից: Աշխարհի նշանավոր ընթերցողների պատմությունը եթե ուզենանք գրել, ամենապատվավոր տեղերից մեկը կըպատկանի հռոմեացի Պլինիոս Ավագին, որն ապրել է մեր թվարկության առաջին դարում: Նրա կենսագրությունը հերքում է այն տարածված կարծիքը, թե ընթերցասեր մարդը աթոռից կպած է լինում և քիչ է գործունյա: Պլինիոս Ավագը սպա էր, այնուհետև աստիճանավոր, և շատ էր ճանապարհորդում: Եվ որտեղ էլ լիներ, անընդհատ կարդում էր: Ճաշին, ճամփորդելիս, անգամ լողարանում, ուր հռոմեացիները երկար ժամանակ էին անցկացնում:

(Հին Հռոմում քաղնիքը ոչ միայն լողանալու համար էր, այլև մի տեղ, ուր ծանոթները հանդիպում էին և զրույցի նստում, ուր ճառեր էին արտասանում, քննարկում վերջին իրադարձությունները և նորությունները):

Այն ամենից, ինչ կարդում էր Պլինիոսը, քաղվածքներ էր կատարում: Նրա ամենագլխավոր աշխատությունը «Բնական պատմությունն» է: Այդ գրելու համար Պլինիոսը, իր իսկ վկայությամբ, կարդացել է ուրիշ հեղինակների երկու հազար աշխատություն:

«Բնական պատմությունը» հասել է մինչ մեր ժամանակները: Այնտեղ խոսվում է աստղագիտության, ֆիզիկայի, երկրաչափության, կենդանաբանության, բուսաբանության, գյուղատնտեսության, բժշկության, հանքաբանության և ուրիշ շատ բաների մասին: Այդ բոլոր ասպարեզներին մասնագիտորեն տիրապետելն անկարելի է. Պլինիոս Ավագը մեծ մասամբ հենվում էր նրանց վրա, ում կարդացել էր: Նրա վիթխարի աշխատությունը գրված է անհավասար և զերծ չէ շատ սխալներից, բայց մեզ հստակ պատկերացում է տալիս, թե ինչ գիտեին և ինչ էին մտածում Պլինիոսի ժամանակներում:

Մտովի տեղափոխվենք շատ դարեր առաջվա Իտալիան:

Գյուղական կոշկակարի տանը մեծանում է մի տղա՝ ապագա հեղափոխական ու փիլիսոփա Տոմմազո Կամպանելլան: Դպրոց հաճախել չէր կարող՝ ընտանիքը շատ աղքատ էր: Դասերը լըսում էր դպրոցի բաց պատուհանի ետևը կանգնած: Շուտով Կամպանելլան առաջ անցավ բոլոր աշակերտներից: Հետագայում նա դարձավ վանական (այն ժամանակ կրթություն ստանալու համարյա միակ հնարավոր ճանապարհն էր դա): Տարիներ անց նրա գիտելիքները ավելին էին, քան անհրաժեշտ էր վանականին: Վիթխարի իմացությունը, որը զարմանք էր պատճառում ժամանակակիցներին, նա ձեռք էր բերել անխոնջ ընթերցանությամբ: Նրան մեղադրեցին հերետիկոսության մեջ: Երբ ինկվիզիտորները հարցաքննում էին նրան, ասացին, որ այդքան գիտելիքներ առանց սատանայի օգնության, չէր կարելի ձեռք բերել, Կամպանելլան հըպարտ պատասխանեց. «Իմ գիտելիքները ձեռք բերելու համար իմ անքուն գիշերներին ես ծախսել եմ ավելի շատ մոմ, քան դուք գինի եք խմել ձեր ողջ կյանքում»:

Հեղափոխական դավադրությանը մասնակից լինելու և հերետիկոսության մեղադրանքով Կամպանելլան դատապարտվեց ցմահ բանտարկության և բանտում անցկացրեց համարյա երեսուն տարի: Բանտից ելավ ծերության սեմին:

Բանտարկության բոլոր տարիներին, հենց հնարավորություն էր ունենում, Կամպանելլան աշխատում էր՝ կարդում էր, երբ գիրք էին տալիս, գրում էր, երբ թուղթ էին տալիս: Երբ չէին տալիս ո՛չ գիրք, ո՛չ թուղթ, վերհիշում էր կարդացածն ու խորհում դրա շուրջը:

Հետաքննության ամենածանր օրերին, երբ Կամպանելլային դաժան կտտանքների էին ենթարկում, նաև բանտային երկար տարիների ընթացքում, նա բանաստեղծություններ էր գրում:

Իր ողբերգական երկարատև ողջ կյանքը Կամպանելլան անցավ՝ գրքի նկատմամբ պահպանելով խորին հարգանքը: Նա ինքն էլ իրենից հետո թողեց շատ աշխատություններ, դրանցից ամենանշանավորը «Արևի քաղաքն» է, գիրք ապագա, խելացի և արդար պետության մասին: Նրա բոլոր աշխատությունները, այդ թվում նաև «Արևի քաղաքը», գրված են իր կարդացած գրքերի հիման վրա:

Բոլոր կրքոտ ընթերցասէրներին կենսագրության մեջ մի ընդհանուր բան կա։ Կարդալու ծարավը հագեցնելու համար նրանք ստիպված են եղել հաղթահարել շատ դժվարություններ, հաճախ նաև վտանգներ։ Նրանք որքա՞ն կնախանձեին նրանց, ովքեր կարդալու դըժվարություններ չունեն։ Որքա՞ն կզարմանային, եթե իմանային ամեն մեկը չի, որ օգտվում է այդ հնարավորությունից։ Անհագուրդ ընթերցանությունը չի թուլացրել ստեղծագործական, ստեղծարար ուժերը այդ մեծ մարդկանց, այլ ավելացրել է։ Նրանցից ամեն մեկը կարդացած գրքերին ավելացրել է իր սեփականը, ամեն մեկը մարդկության պատմության մեջ թողել է իր անունը։

Հրապուրանքը գրքի նկատմամբ հաճախ է գրքասերներին մղել անսպասելի արարքների։

Անգլիացի ապագա ֆիզիկոս Մայքլ Ֆարադեյը երիտասարդ ժամանակ հնարավորություն չունեցավ սիստեմատիկ կրթություն ստանալ։ Գիրք գնելու միջոցներ չուներ, իսկ աշխարհում ամենից շատ գիրք կարդալ էր ուզում։ Որպեսզի մոտենար գրքերին, աշխատանքի անցավ մեկի կազմատանը։ Հին հատորների մաշված կազմերը հանելով, հարթելով ճմրթված էջերն ու պատռվածները սոսնձելով, նա ամեն ակընթարթից օգտվում էր, որպեսզի աչքը գցի ձեռքի տակի գրքի տողերին։

Հատկապես գամեցին նրա ուշադրությունը իրենց վրա Բրիտանական հանրագիտարանի հոդվածները էլեկտրականության մասին, որտեղ դեռևս խոսք չկար ո՛չ դինամոմեքենաների, ո՛չ էլեկտրամոտորների մասին, դրանք դեռ պիտի հայտնագործվեին։ Այդ հոդվածներում գլխավորապես խոսքը Վոլտայի և Գալվանի փորձերի, էլեկտրաֆոր մեքենաների, Լեյդենյան շշի մասին էր։

Իսկ ամերիկյան հայտնի գյուտարար Թոմաս Էդիսոնի երազանքն էր կարդալ Ֆարադեյի աշխատությունները։ Էդիսոնն այդ ժամանակ երկաթուղային գնացքի ուղեկցող էր և հաճախ էր գիշերային հերթափոխության գնում։ Այն օրը, երբ Էդիսոնը վերջապես գնեց Ֆարադեյի գիրքը, հերթափոխից տուն վերադարձավ առավոտյա ժամը չորսին, չպառկեց քնելու, այլ խորասուզվեց ընթերցանության մեջ։

Էդիսոնը հանճարեղ գյուտարար էր, բայց ոչ տեսաբան։ Նա բացառիկ պըրակտիկ մտածող էր։ Այդ հանդես է գալիս, ի դեպ, նաև նրա այն խնդիրների մեջ, որ տալիս էր իր մոտ աշխատել ցանկացող երիտասարդներին, երբ ինքըն արդեն անուն էր հանել։ Կարելի՞ է ասել, որ ընթերցանությունն իր հերթին նրան մղել է դեպի գործնական նպատակներ։ Բնավ ոչ։

Մեծ գյուտարարը հրապուրվում էր պատմական գրքերով։ Նա բազմաթիվ անգամ վերընթերցել էր Հյուգոյի «Թըշվառները» և անգիր էր հիշում ամբողջական էջեր։ Նա ջրի պես խմել էր գրադարանի բնական գիտությունների վերաբերյալ գրքերը, մեծ մասամբ այնպիսի գրքեր, որոնք իր ասպարեզից շատ էին հեռու։

Տարօրինակությու՞ն է։ Խենթությու՞ն։ Ո՛չ, սքանչելի ավանդույթ է։ Մեծ ֆիզիկոս և աստղագետ Գալիլեո Գալիլեյը ուսումնասիրեց մաթեմատիկայի և մեխանիկայի վերաբերյալ գրականություն, բայց նաև անտիկ բանաստեղծներ Վիրգիլիոսին, Օվիդիոսին, Հորացիոսին։ Նա ուշի ուշով կարդաց Դանթե և անգամ հանդես եկավ Դանթեի «Աստվածային կատակերգության» վերաբերյալ դասախոսությամբ։

Երբ երևելի գիրքն ու երևելի անհատը հանդիպում են, անիմաստ է ասել, թե գիրքը նրա ասպարեզին չէր վերա-

բորում: Այդպիսի անհատը ընդունակ է, թե՛ իր մասնագիտության, թե՛ դրանից հեռու ասպարեզների մասին դատելու: Այն ամենը, ինչ խորացնում և ընդարձակում է մարդկային մտածողությունը, այն ամենը, ինչ աշխարհի պատկերը լայնորեն բացում է, նրա համար իր մասնագիտությանն է վերաբերում:

Մոլի գիրք հավաքող և ընթերցող էր Ալեքսանդր Սերգեևիչ Պուշկինը: Մահացու վիրավոր, վերջին շնչում, նա վերջին խոսքն ուղղեց իր գրադարանի գրքերին: «Մնաք բարով, բարեկամներ»: Նրա մասին եղած այս տողերը հոգին ալեկոծում են: Պատկերացնում ես Մոյկայի վրա գտնվող տան առանձնասենյակը, ուր նա մեռավ: Գրասեղանը, գրադարակները, գրքերը խիտ-խիտ շարված: Եվ հիշում ես Պուշկինի, դեռևս Լիցեյում, սիրած գրքերին նվիրած բանաստեղծությունը:

Պուշկինը սիրում էր կարդալու աշխատանքը: Գիրքը պահում էր աչքերի դեմ, ձեռքին մատիտ՝ նշումներ անելու համար (սեփական գրքի վրա մատիտով նշումներ անել կարելի է): Ուշադրություն գրաված տեղերը ընդգծում էր կամ լուսանցքում գրում մտածածը, հաճախ դիմացը հարցական կամ բացականչական նշան էր դնում: Մեկ այլ սովորություն ևս ուներ Պուշկինը, գրքի համապատասխան էջում դնում էր թերթիկ՝ իր դիտողություններով:

Ովքեր կարծում են, թե գիրքը կարող է ուսմանը խանգարել, թող հիշեն Պուշկինի հետևյալ խոսքերը՝ «Ընթերցանությունը սովորելու լավագույն միջոց է»: Հաճախ է կատարվում այս մեջբերումը, բայց հազվադեպ է հիշվում, որ նա այդ խոսքերը ասել է իր փոքր եղբայր Լևին, որին շատ էր սիրում և ուզում էր, որ նա կրթված մարդ դառնա:



# ՓՈՔՐԻԿ ԿԱԽԱՐԴԸ



Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

—Մարիա՛ննա,— ասաց հայրը,— մինչև ընթրիքը դեռ ժամանակ ունենք։ Ուզում եմ տեսնել, թե ինչպես ես յուրացրել երեկ հանձնարարված վարժությունը։

Գեղեցիկ, շողշողուն Մարիաննան հաճույքով մոտեցավ կլավեսինին։ Հարմարավետ սենյակը արդեն պարուրվում էր մթնշաղով, իսկ պատուհանի մոտ մի երեքամյա մանկիկ դիտում էր արևամուտը։

Երբ Մարիաննան սկսեց նվագել, փոքրիկը անմիջապես մոտեցավ կլավեսինին և հայացքը հառեց նրա մատների արագ և վստահ շարժումներին։ Տղան քար լռությամբ ունկնդրեց մինչև դասի ավարտը։

— Հրաշալի է,— ասաց Լեոպոլդ Մոցարտը ժպտալով, երբ աղջիկը վեր կացավ տեղից։— Իմ Մարիա՛ննա, եթե այսպես համառորեն շարունակես, դու կդառնաս հիանալի կատարող։ Իսկ այժմ մայրիկը հրավիրում է մեզ ընթրիքի։ Դու՛ էլ շտապիր այնտեղ, Վոլֆգա՛նգ։

Մարիաննան արագ դուրս վազեց, իսկ Վոլֆգանգը, մոտենալով, բռնեց հոր ձեռքը։

— Ինձ նու՛յնպես սովորեցրու,— թախանձագին խնդրեց տղան։— Ես էլ եմ ուզում Մարիաննայի նման նվագել։

Հայրը փոքրիկի մատները տարածելով իր ափում, ժպտալով ասաց.

— Ի՞նչ կարող են անել այս պստլիկ մատները այն մեծ և ամուր ստեղների վրա։ Մի քիչ էլ համբերի՛ր, փոքրի՛կս, մինչև այս ձեռքերը մեծանան և ամրանան, հենց այդ ժամանակ էլ խոստանում եմ դասերն անմիջապես սկսել։ Իսկ այժմ՝ գնանք ընթրելու։

Փոքրիկին ուսերին դրած, Լեոպոլդ Մոցարտը աստիճաններով ներքև իջավ։ Վոլֆգանգը, ամբողջ ընթրիքի ընթացքում, ուր տիրապետող էր խոսքն ու ծիծաղը, մտազբաղ էր և լուռ։ Ընթրիքն ավարտելուն պես նա բոլորից շուտ դուրս սահեց։

— Սա ի՞նչ է,— հանկարծ հարցրեց Լեոպոլդ Մոցարտը իր ետընթրիքյա ծխամորճը ծխելիս։— Մարիաննան դարձյալ նվագում է։ Ժամանակն է, որ նա անկողնում լինի։

— Ո՛չ, հայրի՛կ, այդ ե՛ս չեմ,— լսվեց մի զվարթ ձայն և հայտնվեց ինքը՝ Մարիաննան, ափսեների կույտով, որ տանում էր լվանալու։

— Ուրեմն ո՞վ է նվագում այն հատվածը,— բացականչեց հայրը,— որ քեզ սովորեցրի ընթրիքից առաջ։

Լեոպոլդը, ծխելը թողնելով, ուշադրությամբ ունկնդրեց։

— Եվ մինչև անգամ ինչպիսի՜ վարպետ կատարում։ Հետաքրքիր է, ո՞վ կարող է լինել, Վոլֆգա՞նգը։

Աստիճաններով անմիջապես վեր բարձրացավ։ Մայրիկն ու Մարիաննան հետևեցին նրան։ Այնտեղ, կիսախավարում, կլավեսինի առջև, բարձր աթոռակի մեջ խորասուզված էր փոքրիկ Վոլֆգանգը։ Ուշադրությամբ նայելով նոտաներին, նվագում էր վստահ ու հանդարտ։

— Այդ դու՞ ես, Վոլֆգա՛նգ,— հարցրեց հայրը ապշած։

Երբ փոքրիկը շրջվում և տեսնում է զարմացած ծնողներին և քրոջը, նրա դեմքի երջանիկ արտահայտությունը անմիջապես անհետանում է։

Աթոռակից ցած սահելով՝ Վոլֆգանգը վազում է նրանց մոտ։

— Հայրի՛կ, ես գիտեի, չէ՞, որ կարող եմ։ Չե՞ս բարկանում վրաս, չէ՞, այնպես էի ուզում նվագել։

— Բայց ո՞վ է սովորեցրել քեզ,— հարցրեց հայրը։

— Ոչ ոք,— պատասխանեց Վոլֆգանգը,— միայն ընթրիքից առաջ լսեցի, թե ինչպես եք սովորեցնում Մարիաննային, և մտածեցի, որ ես էլ կարող եմ։ Իսկապես, հայրի՛կ, դա բոլորովին էլ դժվար չէ։ Խնդրում եմ, չասեք, որ ինձ նվագել չի կարելի։ Կարող եմ նաև զանազան հաճելի ձայներ արտաբերել կլավեսինի վրա։

Եվ, անմիջապես վազելով կլավեսինի մոտ, սկսեց արտաբերել այնպիսի ներդաշնակ տերցիաներ (եռահնչյուններ), որ դեմքը հաճույքից սկսեց փայլել։

— Խնդրում եմ, չասեք, որ այլևս չպետք է նվագեմ,— կրկին աղաչեց նա։

Իսկ Մարիաննան ավելացրեց.

— Օ՜, հայրի՛կ, նա ինձնից լավ է նվագում, թող սովորի։

— Անշուշտ, նա պետք է սովորի,— ասաց Լեոպոլդ Մոցարտը,— առավոտյան էլ հենց կսկսենք։ Այժմ երկուսդ էլ շտապեք դեպի ձեր անկողինները։

Երեխաները շտապեցին դուրս, իսկ Լեոպոլդը, շրջվելով դեպի կինը, ասաց.

— Սա ոչ այլ ինչ է, քան հրաշք։ Երեխան հանճար է։ Նա կգերազանցի ինձ և մեզ կդարձնի հռչակավոր։

Շուտով եղբայր և քույր սկսեցին համերգներ տալ Զալցբուրգում՝ դառնալով հանրահայտ և ավելին՝ վաստակելով որոշ գումար, որով ավելացնում էին իրենց ընտանիքի խղճուկ եկամուտը։ Վոլֆգանգը երջանիկ էր, որ կարող էր նվագել, որքան կամենար։ Սովորեց նաև տավիղ նվագել և երբեմն էլ հորինում էր ինքը և նվագում այնպես, ինչպես իր երևակայությունն էր թելադրում։ Մի անգամ, բոլորովին մենակ մնալով սենյակում, վերցնում է թանաք, գրիչ և սկսում գրել։ Նա այնքան փոքրիկ էր, որ գրելը շատ դժվար էր նրա համար։ Ամբողջովին թանաքոտվելով, անընդհատ ջնջումներ կատարելով, համառորեն շարունակում էր գրել։ Իսկ վերջում, տեսնելով խզբզոցների և խառնաշփոթ նշանների քաոսը, հուզմունքից սկսեց լաց լինել։

Հենց այդ վայրկյանին բացվեց դուռը և ներս մտավ Լեոպոլդ Մոցարտը իր լավագույն բարեկամի հետ, որը նվագախմբի փողհարն էր։

— Ի՞նչ է պատահել, որդյա՛կս,— հարցրեց հայրը զվարթ ձայնով։

— Չեմ կարողանում գեղեցիկ գրել,— հեծկլտաց տղան։— Կոնցերտ եմ գրում կլավեսինի համար, սակայն չեմ կարողանում նոտաները թղթի վրա դասավորել ինչպես որ հարկն է։ Ամեն ինչ այնպես խառնվեց, որ ոչինչ չի կարելի հասկանալ։

— Կոնցերտ կլավեսինի համա՞ր,— բացականչեց հայրը և զարմանքով նայեց ընկերոջը։

— Ապա մի տեսնեմ այդ զարմանալի երաժշտությունը,— շոյելով տղային՝ հայրը վերցրեց թանաքոտված թուղթը և համբերությամբ սկսեց զննել։ Սկզբում կնճռոտվեց, ապա լրջացավ.

— Իրոք որ սա կոնցերտ է,— ասաց նա ընկերոջը։ — Եվ, ազնիվ խոսք, գրված է բացառիկ վարպետությամբ։ Կարող ես ինքդ համոզվել։

Երկուսով նայեցին թղթին՝ ապա ապշած միմյանց նայեցին։

— Այդ ինչպե՞ս է, որ տղան այդպես լավ գիտե կոմպոզիցիայի օրենքները,— հարցրեց փողհարը։— Մինչև անգամ անթերի է։ Սա հասուն երաժշտի ստեղծագործություն է։

— Սովորական գործ չէ,— շարունակում է հայրը։— Բավական բարդ է, որի կատարման համար պահանջվում է արտակարգ վարպետություն։

Վայրկյան անգամ տարակուսելի չէր, որ փոքրիկ Վոլֆգանգը հանճար է։ Հարկ չկար նրան ուսուցանելու, նա ի վիճակի էր բնազդով կատարել այն ամենը, ինչ ուրիշները կարող էին միայն քրտնաջան աշխատանքից հետո։ Եվ զարմանալին այն է, որ շռայլ գովեստներից և փաղաքշանքներից փոքրիկը երբեք չառավ։ Իր կատարածի մեջ երբեք արտառոց ոչինչ չէր տեսնում։ Միայն նրա համար զարմանալին այն էր, որ ինչն իրեն թվում էր այդքան հեշտ և բնական, մյուսները անել չէին կարող։ Տանը նրա հասցեին գովեստներ բնավ չէին արվում։ Ուստի և բոլոր սովորական փոքրիկների նման, զվարճանքի և չարաճճիության սիրահար Վոլֆգանգը դառնում է սովորական, երջանիկ և անփույթ երեխա։

Վոլֆգանգի և Մարիաննայի վաստակած դրամը քիչ էր, որպեսզի Մոցարտները ծայրը ծայրին հասցնեն, և պատճառներից մեկը այդ էր, որ հայրը որոշում է վեցամյա տղային տանել եվրոպական երկրներ, համերգներով շրջագայելու։ Մյուս պատճառն այն էր, որ կամեցավ որդու հանճարը դարձնել հանրահայտ։

1762 թ. գարնանը երեքով ճանապարհ ընկան։ Այցելեցին Մյունխեն, ապա Վիեննա, ուր երեխաները ելույթ ունեցան մեծն կայսրուհի Մարիա Թերեզայի պալատում։

Վոլֆգանգը ամենևին էլ չէր քաշվում կայսրուհուց և, երբ բարձրահասակ ու վայելչակազմ տիկինը ժպտաց, ձեռքերը լայն տարածելով, նա բարձրացավ նստեց նրա ծնկներին և զվարթորեն սկսեց շատախոսել իրենց տան, երաժշտության և Վիեննայի մասին։

Հիացած Մարիա Թերեզան նրան անվանեց փոքրիկ կախարդ։

Վիեննայից հետո նրանք եղան Փարիզում, Լոնդոնում և Ամստերդամով վերադարձան տուն՝ Զալցբուրգ։ Ամենուրեք յոթնամյա տղայի արտասովոր տաղանդը արժանանում էր սիրո, համակրանքի և համընդհանուր հիացմունքի։ Նա մասնակցում էր զանազան երեկույթների, ստանում ընծաներ։ Այդ բոլորը նրա համար հաճելի էր, զվարճալի, սակայն գերլարվածությունը, հուզմունքն ու ուժերի լարումը պահանջում էին ապաքինում և հանգիստ։ Շուտով Լեոպոլդը հաճելի լուր է հայտնում որդուն՝ շրջագայության հաջողության և այն գումարի մասին, որ տանում էին տուն՝ իրենց մորը երկար ժամանակով ազատելու նյութական հոգսերից։

Եթե ականատես լինեինք Վոլֆգանգի դիմավորման արարողությանը Զալցբուրգում, ձեզ կթվար, թե ժամանում է մի երիտասարդ արքայազն։

Մարդիկ լսել էին եվրոպական քաղաքներում տարած նրա հաղթանակների մասին և հպարտանում էին իրենց փոքրիկ համաքաղաքացիով, որ Զալցբուրգը դարձրեց հանրաճանաչ։

13 տարեկանում Վոլֆգանգը նշանակվում է Զալցբուրգի «Արքայազն եպիսկոպոս» նվագախմբի խմբավար և հաջորդ տարին գրում է օպերա, որը բեմադրվում է մեծ հաջողությամբ։

Մոցարտի կյանքը չափազանց բեղմնավոր էր, բայց այն տևեց շատ կարճ՝ ընդամենը երեսունհինգ տարի։ Սակայն նրա ստեղծագործությունները պահպանում են փոքրիկ կախարդի փայլուն հիշատակը։

Անգլերենից թարգմանեց
ՎԱՐԴՈՒՀԻ ԲՈՒԼՈՒԹՅԱՆԸ

# ՀՈՎՀԱՆՆԵՍ ԲԱՂՐԱՄՅԱՆ

## Հայրենասեր ու հայրենիքի մարտիկ եղեք

Իմ թանկագին պատանի բարեկամներ՝ պիոներներ, «Պիոների» ընթերցողներ, բոլորդ էլ շատ լավ գիտեք, թե ինչպիսի հերոսական ճանապարհ է անցել հայ ժողովուրդը բազում դարերի ընթացքում: Գիտեք նաև, թե գիտության, մշակույթի ու արդյունաբերության բնագավառում ինչպիսի թռիչքներ են կատարվել վերջին 60 տարիների ընթացքում:

Մենք՝ ավագ սերնդի ներկայացուցիչներս, Հայաստանը՝ մեր հայրենիքը տեսել ենք նրա ամենածանր, ամենադժվարին, ամենադաժան ու ողբերգական տարիներին: Եղել ենք նրա զինվորը, նրա պաշտպանը և հավատացել, որ մեր ժողովուրդը կհաղթահարի սովը, համաճարակները, թուրք ցեղասպանների ասպատակությունները: Եվ իսկապես կորստի եզրին հասած Հայաստանը մոխիրներից վերածընվեց: Վերածնվեց իր զավակների սխրանքը, կյանքը հայրենիքին նվիրելու, մեծագործությունների շնորհիվ:

Ահա այդ Հայաստանն է, որ այսօր դարձել է խոշոր արդյունաբերության, գիտության ու տեխնիկայի, բարձր մշակույթի երկիր:

Այո, մեզ՝ ավագ սերնդի ներկայացուցիչներիս, հեշտ է համեմատություն անցկացնել, տեսնել կատարվածը, իրականը, շոշափելին և ասել, որ Հայաստանը կոմունիստական կուսակցության անմիջական ղեկավարությամբ մեծ վերելք է ապրել, խոշոր առաջընթաց:

Մեր ժողովուրդը իրեն գերազանց դրսևորեց մեր հայրենիքի համար ծանր փորձության՝ Հայրենական մեծ պատերազմի տարիներին: Կես միլիոնից ավելի հայ ռազմիկներ սովետական երկրի բոլոր ազգերի ու ազգությունների զավակների հետ ուս ուսի կռվում էին մեր երկիրը ներխուժած գերմանաֆաշիստական զավթիչների դեմ: Դա կենաց ու մահու պայքար էր: Եվ մենք հաղթեցինք: Հաղթեցինք որովհետև մեր գործն արդար էր, որովհետև մեր տան պատիվն էինք պաշտպանում: Ծանր նստեց այդ պատերազմը ինչպես ողջ Սովետական Միության, այնպես էլ հայ ժողովրդի վրա: Քսան միլիոն մարդկային զոհ և ահռելի տնտեսական վնաս, ավերված հազարավոր քաղաքներ ու գյուղեր: Սակայն ժողովրդի հերոսական ոգին հաղթահարեց դժվարությունները, երկիրը դարձրեց ավելի հզոր, քան էր մինչ պատերազմը:

Համոզված եմ, վստահ եմ, որ այսօրվա հայ պիոներներն ու կոմերիտականները կշարունակեն ժողովրդի լավագույն ավանդույթները, և Սովետական Միության եղբայրական ժողովուրդների հետ կիրականացնեն կուսակցության ու կառավարության նոր կանխագծումները՝ հանուն պայծառ ապագայի:

*ՀՈՎՀԱՆՆԵՍ ԲԱՂՐԱՄՅԱՆ*
*Սովետական Միու-կրկնակի Հերոս, Սովետական Միության մարշալ*

Լուսանկարը՝ ՏԻԳՐԱՆ ՓԱՇԱՅԱՆԻ

## ԳԻՏԵ՞Ք ՈՐ...

Վետտինում. Հալլե քաղաքի (ԳԴՀ) մոտակայքում է գտնվում երկրի պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնական հաստատություններից ամենաանսովորը՝ հովիվների դպրոցը: Եթե դեռ ոչ վաղ անցյալում ծույլ դպրոցականին վախեցնում էին առանց կրթության մնալու հեռանկարով ու ասում էին, թե տավարած կդառնաս, ապա այժմ բոլորի համար պարզ է դարձել, որ այսօր տավարած լինելն էլ այնքան հեշտ բան չէ և հատուկ կրթություն է պահանջում: Դպրոցի աշակերտները, ընդհանուր գիտելիքների հետ միասին ուսումնասիրում են նաև շնաբուծության և անասնաբուծության հիմունքները: Դպրոցում այժմ 170 աշակերտ է սովորում:

●

Ամերիկյան Նյու-Ջերսի նահանգում Ուշեն-Գրոուվ կոչվող մի փոքրիկ քաղաք կա, յոթ հազար բնակչով, որտեղ արդեն 100 տա-

# ԾԱՂԻԿ ՀԻՎԱՆԴՈՒԹՅՈՒՆԸ ՎԵՐԱՑԵԼ Է

Ծաղիկ հիվանդությունը ամբողջ աշխարհում անհաշիվ քանակությամբ մարդ կործանեց և խեղանդամ դարձրեց: Միայն Ռուսաստանում օրինակ, 1891—1912 թվերին ծաղիկով մոտ հարյուր հազար մարդ էր հիվանդանում, և նրանց մեծամասնությունը մահանում էր:

Ծաղիկ հիվանդության դեմ պայքար ծավալվեց խորհուրդների երիտասարդ երկրի համար ամենադժվարին՝ 1919 թվականին: Վ. Ի. Լենինը դեկրետ ստորագրեց բնակչության համածաղիկային պարտադիր վակցինացիայի մասին: Հեշտ չէր այդ հիվանդությանը հաղթել այդպիսի մեծ երկրում, բայց բուժաշխատողները հաղթեցին միայն 1937 թվականին:

Կարող եք հարց տալ՝ հապա ինչու՞ մինչև վերջերս ծաղկի դեմ պատվաստումներ էին անում: Որովհետև այն դեռ շարունակում էր մարդկանց հնձել և՛ Լատինական Ամերիկայում, և՛ Աֆրիկայում, և՛ Ասիայում, ուրեմն վարակը կարող էր թափանցել մեր երկիրը: Իսկ այդ հիվանդությունը շատ կպչուն է, բավական է մեկն հիվանդանա, վարակը, հրդեհի պես, համաճարակի է վերածվում:

1958 թվին առողջապահության XI Ասամբլեայում սովետական պատվիրակությունն առաջարկեց ծաղիկ հիվանդությունը արմատախիլ անել ամբողջ աշխարհում: Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը Առողջապահության համաշխարհային կազմակերպությանը 225 միլիոն դոզա վակցինա (վարակիչ հիվանդությունների դեմ պատվաստանյութ) հանձնեց, մեկ միլիարդ դոզա ուղարկվեց աշխարհի շատ երկրներ: Եվ տասնվեց երկրների բուժաշխատողները սովետականների հետ մեկտեղ հարձակման անցան մարդկության թշնամու դեմ, որը նրան կեղե-

քում էր հազարավոր տարիներ (դեռևս հին եգիպտական ձեռագրերում ծաղիկ հիվանդության մասին հիշատակություններ կան):

1973 թ. փետրվարին հիվանդությունը վերացրել էին Լատինական Ամերիկայում, համարյա ամբողջ Աֆրիկայում: Ասիայում նրա օջախները միայն Հնդկաստանում, Պակիստանում և Բանգլադեշում էին մնացել:

1973 թ. աշնանը լայն հարձակում սկսվեց Հնդկաստանում: Սովետական բուժաշխատողները անխոնջ հետևում էին հիվանդությանը, գնում նրա հետքերով, ջանալով հնարավորին չափ արագ հայտնաբերել նրա տարածման օջախները: Տեղի հազարավոր բնակիչներ օգնության եկան բուժաշխատողներին և միասին սկսեցին «սանրել» ամեն մի գյուղ: Հենց որ հիվանդ էին հայտնաբերում, անմիջապես սրսկում էին շրջապատի մարդկանց, որպեսզի կանխեն վիրուսի տարածումը և համաճարակի բռնկումը: Հետո դարձյալ շաբաթ շաբաթի հետևից հիվանդների որոնում: Մեկ տարի անց հայտնաբերվեց Հնդկաստանի վերջին հիվանդը:

1977 թվականի հոկտեմբերին ծաղիկը վերջնականապես հաղթահարվեց: Միջազգային հանձնաժողովը մեկ անգամ էլ ստուգում անցկացրեց ամեն մի երկրում և հիվանդություն չհայտնաբերեց: Բուժաշխատողների ջանքերը հաղթանակով պսակվեցին: Ահա թե ինչու այժմ ծաղկի դեմ պատվաստում չեն անում:

Ծաղիկ հիվանդությունը վերացել է, բայց նրա դեմ զենքը պահպանվում է. միջազգային հանձնաժողովը որոշել է աշխարհում 200 միլիոն պատրաստի վիճակում վակցինա ունենալ:

*Թարգմ. Ա. ՄԱՆԱՍՅԱՆԻ*

## ՎԵՐԱՑԵԼ Է ԾԱՂԻԿ ՀԻՎԱՆԴՈՒԹՅՈՒՆԸ

րի է կիրակին «լռության օր» է հայտարարված: Տրանսպորտի երթևեկությունը լրիվ արգելված է, իսկ փողոցները փակվում են չուգունե ծանր շղթաներով և կողպվում են: Միակ շարժումը, որ թույլատրված է, այն էլ դատական երկարատև վեճերից հետո. հեծանիվներով թերթերի առաքումն է:

●

Լենինգրադի ավիացիոն սարքաշինության ինստիտուտի կոնստրուկտորները կառուցել են վեցոտանի ռոբոտ և նրա քայլելու սահունությունը այնպիսին է, ինչպիսին սարդինը: Ռոբոտը կարող է քայլել արագացրած քայլերով, շարժելով երկու ոտքերը, կարող է վազել երեք ոտքերի օգնությամբ: Կարող է բազմահարկ շենքի սանդուղքներով փոխադրել բեռներ, հեշտությամբ անցնել հաստոցներ շարած արտադրամասի միջով կամ զիգզագաձև միջանցքով:

Ռոբոտ սարդը հատկապես օգտակար է երկրաբաններին լեռներում և ծովերի հատակներում:

# ԵՐԿԱՐԱԿԵՑՈՒԹՅԱՆ ԳԱՂՏՆԻՔՆԵՐԻՑ

Հանրահռչակ Արթուրո Տոսկանինին դիրիժորական նոտակալի առջև կանգնեց իր մինչև 90 տարեկան հասակը։ Իսկ նրանից ոչ պակաս աչքի ընկած երաժիշտ Լեոպոլդ Ստոկովսկին նվագախումբը ղեկավարում էր իր մինչև 95 տարեկան հասակը։

Ինչո՞վ բացատրել։ Դոկտոր Էտլեսը «Ֆորում մեդիսին» ամսագրում հոդված է հրապարակել, որտեղ այդ առթիվ երկու ենթադրություն է առաջ քաշում։ Առաջին. այդ աշխատանքը դրական շատ հույզեր է տալիս դիրիժորին։ Մշտապես գտնվելով հիասքանչ երաժշտության կատարման ոլորտում, դիրիժորները խոր հաճույք և ինքնաարտահայտման եզակի զգացողություն են ունենում, որ ավելի՛ է ուժեղանում ունկնդիրների հիացական արտահայտություններից։ Հսկայական նվագախումբը ենթարկվում է դիրիժորական փայտիկի շարժումներին։ Բժշկական ուսումնասիրությունները հաստատում են ուրախ ապրումների, պաշտոնակիցների կողմից ցույց տրված հարգանքի, խրախուսանքի և գնահատանքի արտահայտությունների, այսինքն հոգեբանական բարենպաստ միջավայրի առկայության դրական ազդեցությունը մարդու առողջության և երկարակեցության վրա։

Երկրորդ գործոնը, ըստ Էտլեսի, դիրիժորության ընթացքում մարմնի համարյա բոլոր մկանների ակտիվ շարժումներն են, որոնք ամրացնում են սիրտ-անոթային սիստեմը։

# ՀԻՄՆ՝ ԳՐՎԱԾ ԲԱՆՏՈՒՄ

Հարավամերիկյան Կոստա-Ռիկա երկրի հիմնը, հավանորեն, աշխարհի պետական միակ հիմնն է, որ գրվել է... բանտում։

1853 թ. քաղաքացիական պատերազմի ավարտից հետո Կոստա-Ռիկայում իշխանության գլուխ անցավ հեղափոխական խունտան։ Այդ ժամանակ երկիր պիտի գային Անգլիայի և ԱՄՆ-ի լիազոր դեսպանները։ Պարզվեց, որ նորերս անկախություն ստացած պետությունը իր ազգային հիմնը չունի, որով սովորաբար դիմավորում են բարձրաստիճան հյուրերին։ Դժվար կացությունից դուրս գալու համար, երկրի պրեզիդենտը պալատ հրավիրեց այդ օրերին ժողովրդականություն վայելող երաժիշտ Գուտյերեսին և նվերներ խոստանալով, հրամայեց հինգ օրում հիմնի մեղեդին գրել։ Գուտյերեսը երբեք «կանոնավոր» երաժշտություն չէր սովորել, նոտաներ չգիտեր և միշտ լսողությամբ էր նվագում։ Ուստի հրաժարվեց իր համար շոյիչ, սակայն չափազանց պատասխանատու այդ հանձնարարությունից։ Գազազած պրեզիդենտը հրամայեց անհնազանդ երաժշտին բանտ տանել և փակել այնտեղ այնքան, մինչև հիմնը պատրաստ լինի։

Գուտյերեսը խցում միայնակ, պարապությունից այնքան զանազան մեղեդիներ սուլեց, մինչև որ չորրորդ օրվա վերջին ծնվեց ուրախ, աշխույժ քայլերգի մեղեդին։ Հենց դա էլ նվագեցին դեսպաններին դիմավորելիս, որը և հետագայում այդպես էլ մնաց որպես Կոստա-Ռիկա երկրի ազգային հիմն։



ՀԵՆՐԻԿ ԻԳԻԹՅԱՆ

# ԱՇԽԱՐՀՈՒՄ ԱՌԱՋԻՆԸ

1970 թ. մարտի 13-ին բացվեց աշխարհում առաջին մանկական պատկերասրահը Երևանում: Մենք, պատկերասրահի հիմնադիրներից՝ Ժաննա Աղամիրյանի հետ պատկերասրահի ցուցափեղկերում փակցրեցինք կոչ՝ «Բոլորին, բոլորին... Երևան քաղաքի բոլոր երեխաներին, ներկայացրեք ձեր նկարները»: Մեր սպասումները արդարացան: Այժմ պատկերասրահի ֆոնդերում հաշվվում են ավելի քան 100 հազար նկար՝ աշխարհի 60 երկրից:

10-ամյա մանկական պատկերասրահն արդեն ունի իր ավանդույթները: Ամեն տարի, մայիսի 20-ին, նկարող երեխաները հավաքվում են օպերային թատրոնի հրապարակում և գունավոր կավիճներով նկարում ասֆալտի վրա: Այդ օրը վերածվում է իսկական տոնի, բացահայտվում են նորանոր փոքրիկ տաղանդավոր նկարիչներ: Իսկ հունիսի 1-ին, Երեխաների պաշտպանության միջազգային օրվա առթիվ մանկական պատկերասրահում բացվում է միջազգային ցուցահանդես: Մեր մանկական պատկերասրահն իր ներքին մասնակցել է շատ միջազգային ցուցահանդեսների և արժանացել բազմաթիվ դիպլոմների: 1977 թ. Ճապոնիայում կազմակերպված միջազգային ցուցահանդեսում գրավեց առաջին տեղը և պարգևատրվեց ոսկե մեդալով:

Բոլոր նկարող երեխաները չէ, որ նկարիչ են դառնում: Հասակ առնելու հետ փոխվում են նրանց նախասիրությունները:

Մեր նպատակն է՝ բացահայտել և պարբերաբար զարգացնել երեխայի ստեղծագործական ընդունակությունները, գեղագիտական ճաշակը, գեղեցիկը տեսնելու և գնահատելու ունակությունը և նպաստելու, որ յուրաքանչյուր երեխա դառնա բազմակողմանի զարգացած և ներդաշնակ մարդ:

Մանկական ստեղծագործության, հոգեբանության և գեղագիտական շատ կարևոր հարցերով է այսօր զբաղվում մանուկների գեղագիտական դաստիարակության հանրապետական կենտրոնը, որը ստեղծվեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և Մինիստրների խորհրդի 1978 թ. որոշմամբ: Միության մեջ առայժմ եզակի այդ հաստատությունն ունենալու է ոչ միայն նկարչական, այլև երաժշտական, թատերական, ժողովրդական արհեստների մի շարք բաժիններ, մանկական ստեղծագործության թանգարանն իր ընդարձակ հայկական, համամիութենական, միջազգային բաժիններով, կերպարվեստի ստուդիաները՝ գեղանկարչական ու կիրառական արվեստի ամենատարբեր նյութերով, մանկական թատրոնը, որտեղ դերասանները հենց իրենք՝ երեխաներն են լինելու և ամեն ինչ՝ սկսած ներկայացումների դեկորներից, ձևավորումից, անելու են նրանք, արվեստագետ մեծահասակների ակտիվ մասնակցությամբ, մանկական ֆիլհարմոնիան՝ իր հնագույն երաժշտության, էստրադային և ազգագրական խմբերով, կամերային նվագախմբով:

Կստեղծվի մանկական արվեստի ակադեմիա, որտեղ կսովորեն ամենաշնորհալի երեխաները ոչ միայն մեր Միության, այլև սփյուռքի:

*Լուսանկարը՝ ԶԱՎԵՆ ՍԱՐԳՍՅԱՆԻ*

# ԸՆՁՈՒՂՏԸ



ՎԱՀԱԳՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ



Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

Ընձուղտը կենդանաբանական այգի հասավ սովորական ճանապարհով: Այսինքն՝ Աֆրիկայում նավ նստեց, հետո Եվրոպայում գնացք, այդ գնացքից իջավ ուրիշ գնացք նստեց, վերջում էլ բեռնատար մեքենայով ժամանեց քաղաքի կենդանաբանական այգի:

Երբ կենդանաբանական այգի ժամանեց, նրա վիզը ամենևին էլ երկար չէր: Նրա վիզը երկար չէր նաև այն ժամանակ, երբ արդեն կենդանաբանական այգում էր: Քաղաքի երեխաները գալիս էին նրան տեսնելու և տեսնում էին սովորական վզով ընձուղտ: Եվ երևի Ընձուղտի վիզը մինչև օրս էլ սովորական լիներ, եթե մի գիշեր կենդանաբանական այգու պահակը չլսեր նրա լացը:

Պահակը սովորել էր, որ նորեկ գազանները առաջին գիշերներին լաց են լինում, ուստի բանի տեղ չդրեց Ընձուղտի լացն ու գնաց քնելու: Բայց չկարողացավ քնել, որովհետև Ընձուղտը լաց եղավ մինչև առավոտ: Իսկ երբ հաջորդ



գիշեր համոզվեց, որ Ընձուղտը նորից չի թողնելու ինքը քնի, վեր կացավ ու գնաց նրա մոտ:

— Ինչպե՞ս չես ամաչում,— ասաց Պահակը:

— Ես ընդամենը երկու տարեկան եմ,— ասաց Ընձուղտը լացի միջից:

«Այ քեզ բան, ճիշտ իմ որդու տարիքին»,— մտածեց Պահակը և ծոծրակը քորեց: Նա գիտեր, թե ինչպես պիտի վարվել, երբ երկու տարեկան երեխան գիշերվա կեսին լաց է լինում (նա արթնացնում էր կնոջը, և կինը գրկում ու օրորում էր երեխային), բայց նա չգիտեր ինչպես վարվի երկու տարեկան Ընձուղտի հետ: Պահակը գուցե և գնար կնոջը արթնացնելու, բայց, միևնույն է, իր կինը չէր կարողանա Ընձուղտին գրկել ու օրորել, ուստի ասաց.

— Հասկանում եմ, կարոտել ես ձերոնց...

— Շա՜տ...— ավելի բարձր լաց եղավ Ընձուղտը:

— Հասկանում եմ...— մրթմրթաց Պահակը:— Բայց դու աշխատիր սիրել կենդանաբանական այգին: Վերադարձ, միևնույն է, չկա...

— Եթե վերադարձ չկա... գոնե մի վերջին անգամ, գոնե մի աչքով նորից տեսնեմ մեր տունը...—էլ ավելի բարձր լաց եղավ Ընձուղտը:

Պահակը նորից քորեց ծոծրակը: Նա բարի սիրտ ուներ, և ինչպես արդեն գիտեք, երկու տարեկանների լացը սրտին մոտ էր ընդունում (եթե անգամ նրանք շատ խոշոր էին, նույնիսկ իրենից խոշոր):

— Շատ լավ,— ասաց նա Ընձուղտին,— եթե խոստանում ես այլևս լաց չլինել, վաղը գիշերը, երբ բոլորը քնեն, քեզ Աֆրիկա կտանեմ: Մի աչքով, ինչպես դու ես ասում, կնայես ու ետ կգանք: Եղա՞վ:

Ընձուղտը ուրախացավ, վերջ տվեց լացին և առաջին անգամ քնեց: Ամբողջ գիշեր երազում նա Աֆրիկան էր տեսնում, իսկ առավոտյան կենդանաբանական այգու այցելուները տեսան ուրախ Ընձուղտին: Զարմացան, որ մինչև հիմա միայն տխուր Ընձուղտ էին տեսել, բայց իսկական զարմանքը նրանց հաջորդ օրն էր սպասում:

Երբ մթնեց, երբ կենդանաբանական այգում այլևս այցելուներ չկային, բոլոր գազանները քնած էին (իհարկե, բացի Ընձուղտից), Պահակը կատարեց իր խոստումը: Բացեց դուռը, Ընձուղտին դուրս բերեց, տեղավորեց ծածկած թափքով մեքենայի մեջ, ինքն էլ նստեց ղեկի առաջ, և գնացի՜ն, գնացի՜ն, կտրեցին անցան Եվրոպան, և Ատլանտյան օվկիանոսով նավարկեցին դեպի Աֆրիկա...

Հիմա ինձ կհարցնեք՝ այդ ինչպես մեքենայով այդքան շուտ հասան Ատլանտյան օվկիանոսի ափերը, ինչպես

էին լաստով Աֆրիկա հասնելու և ինչ-
պես նույն գիշերն էլ պիտի ետ գային...
Միանգամայն իրավացի եք: Բանն այն
է, որ նրանք ոչ մի տեղ էլ չէին գնացել:
Պահակը գործի էր գցել մեքենան, բայց
մեքենան հռնդում էր կանգնած տե-
ղում, հետո էլ Պահակը Ընձուղտին մե-
քենայից իջեցրեց և կանգնեցրեց ոչ
թե լաստի, այլ այն տախտակամածի
վրա, որ խորանում էր կարապների,
բադերի և մյուս ջրային թռչունների
լճակի մեջ: Քանի որ անթափանց մութ
էր (Պահակը նախապես պայմանավոր-
վել էր ամպերի հետ, որ կծածկեն Լուս-
նին ու աստղերին), Ընձուղտը ոչինչ
չէր տեսնում և հավատում էր, որ ճամ-
փորդում են: Իսկ որ նրա մտքով չէր
անցնում ձեր տված հարցը տալ, ապա
միայն այն պատճառով, որ չնայած չա-
փերով խոշոր էր, նույնիսկ շատ խոշոր,
բայց ընդամենը երկու տարեկան էր:
Այդպես նրանք նավարկում էին կա-
րապների լճակով (Պահակը երբեմն-
երբեմն թիակով չփչփացնում էր ջուրը),
Ընձուղտը րոպեն մեկ հարցնում էր,
դեռ շա՞տ կա, դեռ շա՞տ կա, Պահակը
պատասխանում էր՝ քիչ մնաց, քիչ
մնաց, իսկ երբ հանկարծ ամպերը մի
կարճ պահ ետ քաշվեցին, բացելով
մի փոքրիկ աստղիկի, Ընձուղտը տե-
սավ դիմացի սարալանջն ու գոռաց.

— Տեսնու՛մ եմ, տեսնու՛մ եմ...

Ամպերը ինչ արագությամբ որ ետ
էին քաշվել, նույն արագությամբ էլ նո-
րից ծածկեցին աստղիկին: Ընձուղտը
դեռ գոռում էր՝ տեսնու՛մ եմ, տեսնու՛մ
եմ, իսկ Պահակը ոչինչ չէր ասում,
որովհետև այնպիսի բան էր տեսել, որ
մազերը բիզ-բիզ էին կանգնել: Ընձուղ-
տը ամբողջ գիշեր այնքան էր վիզը ձը-
գել, որ տեսնի Աֆրիկան, որպեսզի
հանկարծ աչքից բաց չթողնի, որ նրա
վիզը երկարե՛լ, երկարե՛լ, իր մարմնից
էլ երկար էր դարձել: Պահակը վախե-
ցավ և ուշքի գալով ասաց, որ ետ դառ-
նալու ժամանակն է: Ընձուղտը չընդ-
դիմացավ, որովհետև խոստացել էր,
որ ինքը կտեսնի Աֆրիկան ու ետ
կդառնան: Նրան նույնիսկ թվում էր,
որ ինքը խաբել է բարի Պահակին,
որովհետև նայել էր ոչ թե մեկ, ինչպես
խոստացել էր, այլ երկու աչքով: Բայց
իրեն մխիթարում էր, մտածելով, որ
մթության մեջ Պահակը այդ նկատած
չի լինի:

Նրանք ետ նավարկեցին Ատլանտ-
յան օվկիանոսով (որը կարապների
լճակն էր) և, իհարկե, ավելի շուտ տեղ
հասան, քան հեռացել էին (որովհետև
Պահակը շտապում էր), բայց Ընձուղ-
տը դա չնկատեց (մի մոռացեք, երկու
տարեկան էր): Ճամփորդությունը մե-
քենայով ավելի կարճ տևեց, բայց Ըն-
ձուղտը դա էլ չնկատեց: Ընդհակառա-
կը, նա դեռ մի բան էլ ուրախ էր, որ
շուտ տեղ հասան, որ մեքենայի դըռ-
դըռոցը վերջապես կդադարի, և ինքը
կկարողանա երազում նորից տեսնել
քիչ առաջ իր աչքով տեսած Աֆրիկան:

Իսկ առավոտյան բոլորը տեսան եր-
կար վզով Ընձուղտին: Նայում էին ու
իրենց աչքերին չէին հավատում: Բայց
ի վերջո ստիպված եղան հավատալ և
ոչ միայն հավատացին, այլև ընտելա-
ցան ու շուտով արդեն Ընձուղտին
առանց երկար վզի չէին պատկերաց-
նում:

Ահա այսպես եղավ, որ Ընձուղտի
վիզը երկարեց: Նրա երկար վիզը ուրա-
խացնում է կենդանաբանական այգու
այցելուներին, և ոչ մեկի մտքով չի անց-
նում, որ Ընձուղտի վիզը երկարել է
կարոտից:

# Առնետները սպառնում են...



Հանձինս կրծողների մարդկությունն ունի փոքրիկ թշնամիների մի հըսկայական բանակ, որը ընդգրկում է երկու հազարի չափ տարբեր տեսակներ։ Նրանցից ամենաշատ տարածվածներից են մարդու հետ սերտորեն կապված գորշ ու սև առնետները և նրանց զանազան ենթատեսակները (մկները, համստերները և այլն)։ Նրանք լուրջ վըտանգ են մարդկության համար։ Պատկերավոր ասած՝ առնետներն արդեն «բռնագրավել» են Իտալիան։ Միայն Հռոմում կա 30 միլիոնից ավելի «առնետային բանակ»։ Զարմանալի է, որ այն կղզիներում, ուր ամերիկացիք ատոմային ռումբերի փորձարկումներ են կատարել, և կարծում էին, որ այնտեղ երկար ժամանակ անհնար կլինի կենդանական կյանքը, ստուգումները հաստատել են բազմաթիվ առնետների առկայությունը։ Զավեշտական է, որ համաշխարհային առողջապահության կազմակերպության նորակառույց շենքը նույնպես զերծ չէ կըրծողներից։ Ապշեցուցիչ է նրանց բազմացման թափը։ Բարենպաստ պայմաններում մեկ զույգ առնետը կարող է տարեկան տալ հազարի չափ ժառանգ, որոնք ապրելով ու բարգավաճելով մարդու հաշվին, հենց նրան էլ հսկայական վնաս են հասցնում։ Ապացուցված է, որ միջին քաշի (250 գ) մեկ գորշ առնետը օրական կարող է խժռել իր քաշի 1/10-ի չափ կեր, իսկ այդ նշանակում է, ամենահամեստ հաշվումներով, նա կարող է տարեկան ուտել 10 կգ-ի չափ սննդամթերք և հըսկայական գապատիկ ավելին էլ անպետքացնել։

Կրծողները միայն տնտեսական վնաս չեն պատճառում։ Նրանք հանդիսանում են մարդու և կենդանիների համար վտանգավոր մի շարք հիվանդությունների հարուցիչների և փոխանցողների կրողներ։ Այդ հիվանդություններից է ժանտախտը, որը մինչև վերջերս լուրջ սպառնալիք էր մարդկության համար, միայն հակամիջատային նյութերի հայտնագործումից հետո որոշ չափով կորցրեց իր երբեմնի սրությունը և տարածվածությունը։

Այժմ ողջ աշխարհում ծավալուն պայքար է տարվում կրծողների դեմ։ Այդ պայքարում ուրույն տեղ ունի նրանց ապրելակերպի ուսումնասիրությունը։ Գտնում են, որ քանի չեն բացահայտվել առնետների կենսաբանական առանձնահատկությունները, նրանք կշարունակեն բարգավաճել։

Նրանց ոչնչացման համար երկար տարիներ օգտագործվել են մկընդեղ, ստրիխինին և այլն։ Հայտնի է դարձել, սակայն, որ առնետները մեծ

կասկածանքով են ընդու-
նում շրջապատի փոփո-
խությունները և նոր նյու-
թերի հայտնությունը
խրտնեցնում է նրանց։
Այդ պատճառով այժմ օգ-
տագործում են այնպիսի
նյութեր, որոնք ներգոր-
ծում են մի քանի օր հե-
տո և կրծողների մոտ վախ
չեն առաջացնում։ Սա-
կայն, դժբախտաբար առ-
նետները ձեռք են բերում
նրանց նկատմամբ դի-
մադրողականություն և
նրանցից սերվում են այս-
պես կոչված «գերառնետ-
ներ»։

Այս բոլոր տվյալները
հաստատում են նրանց
դեմ տարվելիք պայքարի
լրջությունը, բարդությու-
նը և անհրաժեշտությունը։

Դժբախտաբար այդ
պայքարը շատ բարդ ու
դժվարին է, քանի որ, բա-
ցի հակակրծողային մի-
ջոցառումներից, կան նաև
մի շարք այլ գործոններ՝
բնակչության կուլտուրա-
յի մակարդակը, շրջա-
պատի սանիտարական
վիճակը և այլն։ Աղբա-
կույտերը առնետների
դաշնակիցներն են։ Քանի
դրանք կան, գոյություն
կունենան կրծողների աճ-
ման, զարգացման և բազ-
մացման հրաշալի պայ-
մանները։

Վ. ԽԱՉՈՅԱՆ
կենսաբանական գի-
տության թեկնածու,
բժիշկ

# ԺՊԻՏՆԵՐ

●

Անգլիացի հանճարեղ ֆիզիկոս, մեխանիկ, աստղագետ ու մաթեմատիկոս Իսահակ Նյուտոնի ցրվածությունը հայտնի էր: Այդ է վկայում նաև նրա մի հակիրճ նամակը, որը գիտնականն ուղարկել էր իր մտերիմ ընկերոջը, մի սպայի:

«Այստեղ ամենքը խոսում են,— գրում էր նա,— որ դու հաղթանակ ես տարել երկու ճակատամարտում, իսկ երրորդում բսպանվել ես: Գրիր ինձ՝ արդյոք ճի՞շտ է դա: Դու հո գիտես՝ որքա՜ն կվրշտացներ ինձ քո մահը»:



●

Անգլիացի մեծ ֆիզիկոս Մայքլ Ֆարադեյը շատ բարձր էր գնահատում իր հմուտ օգնականին՝ պահեստի սերժանտ Անդերսենին, [illegible] հրապարակային ելույթների ժամանակ նախապատրաստում էր սարքավորումը և փորձերը: Բայց Անդերսենը, թեպետ մեծապես նրվիրված էր իր ղեկավարին, առանձնապես հիացած չէր մեծ գիտնականի գործունեությամբ:

— Ամբողջ գործը անում եմ ես, ոչ թե Ֆարադեյը,— ասում էր նա,— Ֆարադեյը միայն խոսում է:



●

Աշխարհահռչակ ֆիզիկոս Ամպերը փողոցում ինչ-որ բան մտահղացավ և, մոտը թուղթ չունենալով, առաջին պատահած սև տախտակի վրա սկսեց բանաձևեր գրել: Հանկարծ գրատախտակը շարժվեց տեղից ու առաջ անցավ:

—Սպասիր, ո՞ւր,— գոչեց Ամպերը,— հիմա կըվերջացնեմ:

Շարժվողը կառք էր. շլսեց, գնաց:



●

Ֆրանսիացի բնախույզ Կյուվեն հայտնի էր իբրև ժամանակակից ու բրածո կենդանիների գիտակ: Մի անգամ նրա աշակերտները որոշեցին վախեցնել իրենց նշանավոր ուսուցչին: Պատանիներից մեկին գիշատիչ գազանի մորթի հագցրին, գլխին դրեցին սարսափազդու դիմակ՝ անռելի երախով ու հսկայական եղջյուրներով, իսկ ոտքերին կապեցին սմբակներ:

Բրածո «գազանը» ներխուժեց ուսուցչի առանձնասենյակը և բղավեց.

— Ես քեզ պիտի ուտե՛մ:

Կյուվեն մի պահ նայեց. ապա բարձր ծիծաղելով ասաց.

— Ես չեմ վախենում քեզնից, ո՜վ հրեշ... Դու չես կարող ուտել ինձ...

Բոլոր ամբակավորները խոտաճարակ են: Այդ է բնության օրենքը:



●

Գերմանացի նշանավոր բուսաբան Կարլ Գյոբելը մի անգամ այցելեց իր մտերիմ ընկերոջ արվեստանոցը: Նկարիչը գիտնական ընկերոջը ցույց տվեց իր վերջին աշխատանքը՝ «Արգելված պտուղը», որը նա հենց նոր էր ավարտել: Գյոբելն ուշադիր դիտեց կտավը, ապա նկատեց.

— Ստիպված եմ նկարդ շտկել, կոպիտ սխալ ես թույլ տվել:

— Բայց դու ի՞նչ սխալ ես տեսնում Ադամի ու Եվայի մեջ,— զարմացավ նկարիչը:

— Խոսքը ոչ թե նրանց մասին է, այլ խնձորի, որը Եվան տալիս է Ադամին: Խնձորի այդ տեսակն ստեղծվել է ընդամենը ութսուն տարի առաջ:



●

Ժամանակակից մանրէաբանության հիմնադիր Ռոբերտ Կոխի լաբորատորիան էին այցելել Ֆրանսիայից ու Անգլիայից ժամանած մի խումբ բժիշկներ: Կոխը բացատրություններ էր տալիս նրանց: Հենց այդ ժամանակ դրսից լսվեց շինանյութեր փոխադրող սայլերի դղրդալի աղմուկը: Գիտնականը դադարեցրեց իր բացատրությունը և խորը մտածմունքի մեջ ընկավ: Ապա դառնալով ունկնդիրներին, ասաց.

— Ես կարծում եմ, որ մի քանի տասնամյակ հետո քաղաքային աղմուկի խնդիրը շատ ավելի լուրջ կլինի, քան վարակիչ հիվանդությունները:

Մեծ գիտնականի խոսքերը մարգարեական էին:

*Հավաքեց՝ ԱՆՈՒՇԱՎԱՆ ԴԵՎԿԱՆՑ.*



*Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ*

ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱ-ԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15. Կարմիր բանակի փողոց 15:
Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

# № • 2 ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ • 1981



Շապիկի առաջին էջը՝ ԱՐԹՈՒՐ ՄԵԼՔՈՆՅԱՆԻ, 10 տ., Երևան:

Գլխավոր խմբագիր՝
ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատ. քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆԶՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր):

Տեխ. խմբագիր՝
Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ
Վերստուգող սրբագրիչ՝
Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Հանձնված է արտադրության 24.12.80 թ.: Ստորագրված է տպագրության 6.2.81 թ.: ՎՖ 08530
Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակ՝ Սովետական: Օֆսեթ տպագրություն: 3 տպ. մամ. = 3,9 պայմ. ճրատ. մամ.: Տպաքանակ՝ 61282: Պատվեր 2968: Գինը 15 կ.:

ՀԿԿ Կենտկոմի ճրատարակչության տպարան, Երևան, Օրջոնիկիձեի պող. 2:

Издательство ЦК КП Армении, Ереван, пр. Орджоникидзе, 2.

# ԺԱՄԱՆՑ

Ջրասուզակն ինչպե՞ս պետք է հասնի գանձին, որ ճանապարհին չհանդիպի շնաձկանը:



Գտեք արագիլներից յուրաքանչյուրի ստվերը:




## № 1 ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐ № 1

**ԳԱՂՏՆԱԳԻՐ «ՆՈՐ ՏԱՐԻ»**

«Շնորհավոր Ձեր Նոր տարին, երեխաներ»:

**ԹՎԱԲԱՆԱԿԱՆ ԽՆԴԻՐ**

$1 \times 9 - 8 = 1$

# ՆԿԱՐՈՒՄ ԵՆ ԵՐԵԽԱՆԵՐԸ



ԶԱՐՈՒՀԻ ԱԲԳԱՐՅԱՆ, 9 տ., Լենինական



ՄԱՐՏԻԿ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ, 7տ., Երևան



ՀԱՄԱԶԱՍՊ ՍԱՐԳԱՐՅԱՆ, 9տ., Լենինական



ԱՐՄԻՆԵ ԱՆՄԵՂԻԿՅԱՆ, 6տ., Լենինական



ԱՐԾՐՈՒՆ ԱՎՉՅԱՆ. 10տ., Երևան